# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԺԵ.

ՔՆՆՈՒԹԻՒՆՔ

## ԳՐՈՑ ԴԱՒԹԻ ԱՆՅԱՂԹԻ




ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1893.

# ՔՆՆՈՒԹԻՒՆՔ

# ԳՐՈՑ ԴԱՒԹԻ ԱՆՅԱՂԹԻ

ԿԱՄ

## ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆՑ ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

ԳՐԵՑ


**ՓՐ. Կ. ԿՈՆԻԲԻՐ**

*Անդամ ճեմարանի եւ Դասախօս Համալսարանին Օքսֆորդի*


---

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

ԵՒ

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ԱՐԻՍՏՈՏԷԼԻ ՅԱՂԱԳՍ ԱՍՏՈՒԾՈՅ




ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1893.

# Ա Զ Դ

Յաջորդ գրքոյկիս[1] գլխաւոր մասը ամբողջական թարգմանութիւն է այն աշխատութեան զոր պարգեւեց գիտնական աշխարհի ծանօթ Հայերէնագէտն Փրեդերիկոս Կոռն. Կոնիբեր, եւ որ իւր նպատակը դրած է հետազօտել այնպիսի երկ մ՚որ հայ մատենագրութեան մէջ թէ ըստ նիւթոյն թէ եւ ըստ լեզուին ուրոյն տեղ մը կը գրաւէ: "Դաւթի Անյաղթի„ անուամբ հասած շատ մը իմաստասիրական գրութիւնք ստուգիւ արժանի էին քննութեան թէ՛ ինչ աստիճանի հաւատարմութեամբ պահած են նախնական յոյն բնագիրը: Սակայն իրենց խորթ ու հելլենամոլ լեզուին պատճառաւ շատերուն լոկ արհամարհանաց նիւթ էին այս թարգմանութիւնք:

Հայագիտին գրութեան որպիսութիւնը կ՚իմացուի նաեւ իւր վերնագրէն: Գրութիւնս մասն է "Օքսոնեան անտիպ գրութիւնք„ անուամբ հրատարակուող ժողովածոյ մեծ ձեռնարկութեան, որուն նպատակն է Օքսֆորդի Պոդլեան եւ այլ մատենադարանաց ձեռագրաց մէջէն ի լոյս հանել անտիպ բնագիրներ, յիշատակարաններ, քաղուածքներ, ձեռագրաց համեմատութիւններ եւն: Այս ամէնը բաժնուած է չորս ճիւղի՝ Դասական՝ Սեմական, Արիական եւ Միջին ու Նոր: Առաջիկայ հրատարակութիւնս՝ իբրեւ Դասական ճիւղին Ա Հատորին Զ մասն՝ իրեն նպատակ դրած է Արիստոտէլի եւ Պորփիւրի իմաստասիրական գրութեանց հայերէն թարգմանութիւնը համեմատել բնագրին հետ, ինչպէս կը վկայէ նաեւ խորագիրը. "Համեմատութիւն հայկական հին թարգմանութեանց յոյն բնագրացն Արիստոտէլի Ստորոգութեանց, Յաղագս Մեկնութեան, Յաղագս

[1] Տես Հանդէս Ամս. 1893, Թ. 1, 2, 3, 5 եւ 6:

Աշխարհի, Յաղագս Առաքինութեանց եւ Մոլութեանց, եւ Ներածութեան Պորփիւրի:,,[1]

Ճոխ թղթի վրայ տպուած այս ընտիր երկն բաժնուած է այլեւայլ մասանց: Ներածութենէ մ'ետքն ուր "Դաւթի Անյաղթի,, խնդիրը լուծել ջանացած է հայագէտը, կու գան համեմատութիւնք հայ թարգմանութեանց ընդ յոյն բնագրին՝ Ստորոգութեանց (էջ 1—27.) եւ գրոցն՝ Յաղագս Մեկնութեան (էջ 28—50.) Յաղագս Աշխարհի (էջ 51—71.) Յաղագս Առաքինութեանց (էջ 72—75.) եւ Ներածութեան Պորփիւրի (էջ 76—88:) Ինքնին կը հասկցուի որ այս համեմատութիւնք ամենայն ճշգրտութեամբք եւ խնամով եղած են, որոնց մէջ հեղինակին նպատակն եղած է միշտ հայ բնագրին ընթերցմանէն որոնել գտնել այն յոյն բնագրին ընթերցումն՝ զոր թարգմանիչն առջեւն ունէր: Խնամով նշանակուած են նաեւ հայոյն խանգարեալ տեղերը: Այս համեմատութեամբք այժմ պայծառ գաղափար ունինք մեր սոյն թարգմանութեանց արժէքին նկատմամբ: — Գիրքս նուիրած է հեղինակն Պր. Աբգար Յովհաննիսեանի եւ Հ. Գարեգին Վ. Զարբ. ի Վենետիկոյ Մխ. Հարց՝ "իւր մտերիմ հայ բարեկամաց,, ընծայելով "իրենց հին մատենագրութեան այս ուսումնասիրութիւնը:,,

Համեմատութեանց կը յաջորդեն երկու յաւելուածք, որոնց առաջինն է Փաւիայի հայ ձեռագրին տարբերութեանց ցանկ մը (էջ 89—106:) Ամէնէն կարեւորն է երկրորդ յաւելուածը (էջ 109—183), ուր հրատարակած է հայագէտն Արիստոտէլի "Ստորոգութեանց,, եւ անոր "Յաղագս Մեկնութեան,, գրոց հայերէն բնագիրն: Այնպիսի ճշգրիտ եւ մանրախնդիր խնամովք եղած է այս հրատարակութիւնն՝ որ պէտք է յանձնարարել զայն իբր օրինակ ճշդութեան հրատարակման բնագրաց, որմէ դժբախտաբար զուրկ են մեր մատենագրաց մեծագոյն մասին հրատարակութիւնք: Հայագէտն մինչեւ անգամ ձեռագրաց շեշտն, սուրն ու

[1] Anecdota Oxoniensia, Clas. Ser. I. part VI. A collation with the ancient arm. Versions of the Greek text of Aristotle's Categories, etc. by Fred. Corn. Conybeare. Oxford, 1892, 4° XXVIII 184 pp.

րութիւնը ճշգրտիւ պահել ուզած է: Հրատարակութեանս հիմն է Փաւիայի ձեռագիրը (Cod. Ticinus), որուն հետ համեմատած է հրատարակիչն երկու ձեռագիր Երուսաղէմի (Թ. 1291 եւ 401), երկու՝ Փարիզի (Թիւ 95 եւ 106), Վենետիկոյ 1833ին տպագրութիւնն եւ այլ օրինակաց տարբերութիւնքն, եւ Պորփիւրի Ներածութեան Մադրասի տպագրութիւնն 1793ին: Գրքին ճակտին դրուած է նաեւ շատ յաջող ճշգրտապատկեր մը հայերէն ձեռագրին, որ մաքուր բոլորգիր գրչութիւն մըն է՝ շղագիր եզրագրութիւններով: Հեղինակն իւր գրոց վրայ կարեւոր տեղեկութիւնքն արդէն տուած է Ներածութեան մէջ, զոր ամբողջովին կը ներկայացընենք ընթերցողաց՝ թարգմանութեամբ: Բնագիրն պարզ "Նախաբան,, (Prolegomena) վերնագիրը կը կրէ:

Հեղինակիս գործքին այս "Նախաբանն,, թարգմանուեցաւ նաեւ արեւելեան Հայոց բարբառով՝ Արժ. Մեսրոպ Աբեղայ Տէր-Մովսէսեանցի ձեռօք, եւ լոյս տեսաւ "Արարատի,, մէջ:[1]

Մեր թարգմանութեան վերջը կցուած է յաւելուած մ՚ալ՝ Արիստոտէլի անուն կրող "Յաղագս Աստուծոյ,, ճառին հրատարակութիւնն հնագոյն ձեռագրէ մը, զոր Հայագէտը խաւրած է մեզ ի հրատարակութիւն:[2]

Հ. Յ. Տ.

---

[1] "Արարատ,, 1893 (Վաղարշապատ տպ. Էջմ.) Թ. 1, 2 եւ 3:

[2] Տես "Հանդէս Ամս. 1893, Թ. 8, ուր Վենետկոյ ձեռագրին համեմատութիւնք կը պակսին:

## ՔՆՆՈՒԹԻՒՆՔ

# ԳՐՈՑ ԴԱՒԹԻ ԱՆՅԱՂԹԻ

ԿԱՄ

## ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆՑ ԱՐԻՍՏՈՏԷԼԻ

---

§ 1. Յաջորդ գործքն համեմատութիւն մըն է հայկական հին թարգմանութեանց հետ՝ հետեւեալ գրութեանց.

ա) Ճառք Արիստոտէլի Յաղագս Տասն Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան։ Մեր գործածած յունարէն բնագիրն է Վայցի (Waitz) հրատարակածն, եւ մեր ամէն կոչմունքն ի վկայութիւն յունական ձեռագիրներէն՝ յեցեալ են սոյն հրատարակչին ձեռագրաց համեմատութեան վրայ (apparatus criticus)։

բ) Սուտ-Արիստոտէլեան Ճառք Յաղագս Աշխարհի եւ Յաղագս Առաքինութեանց։ Մեր գործածած այս մասին յունարէն բնագիրն է Պէքքէրի (Bekker) հրատարակածն, այնպէս՝ ինչպէս տպուած է Արիստոտէլի գործոց Պերլինեան հրատարակութեան մէջ։

գ) Ներածութիւն Պորփիւրի։ Սոր համար գործածեցինք Ադոլփոս Պուսէի (A. Busse)

հրատարակած յոյն բնագիրն՝ որ լոյս տեսած է ի Պերլին, եւ մեր յոյն ձեռագիրներէն ըրած կոչմունքն յեցեալ են սոյն գիտնականին ըրած ձեռագրաց համեմատութեան վրայ։

Պէտք է միտ դնել որ Սոորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան ճառերուն մեր այս համեմատութիւնն երկու մասով տպուած է, մէկը՝ բուն համեմատութեան մէջ, միւս մասը՝ առոր կցուած մէկ յաւելուածին մէջ. այնպէս որ երկուքն ալ աչքէ անցընելու է այն ընթերցողն որ հետամուտ է գիտնալ թէ մանաւոր տեղւոյ մը համար ինչ ընթերցուած կը պարունակէ հայ թարգմանութիւնը։ Այս անյարմար կարգաւորման պատճառն այն է որ երբ բուն համեմատութիւնն արդէն տպուած լմնցած էր, ըստ բախտի հանդիպեցայ հայ թարգմանութեան ձեռագրի մ՚որ շատ աւելի ընտիր էր քան այն ամէնն զոր կրցած էի գործածել բուն համեմատութիւնը պատրաստելու համար։ Ուստի ուրիշ միջոց չմնաց ինձի, բայց եթէ յաւելուածի մը մէջ կցել այն ամէն քննադատական արդասիքներն՝ որ այս հայերէն ընտրելագոյն ձեռագրին բաղդատութենէն քաղած էի։ Թէեւ այսպէսով բուն համեմատութեան մէջ տպուած հետեւութիւնքն կանխաժաման են, բայց յուսամ թէ կը զերծանիմ աղբիւրներն անտես ընելու եւ հապճեպ աճապարանաց մեղադրութենէն։ Վասն զի բուն համեմատութիւնս յօրինելու համար՝ որ ներկայ տպագրութեանս 1—50 էջերը կը գրաւէ, չշատացայ հայ թարգմանութեան Վենետկոյ

հրատարակութեամբն, — որ յեցեալ է Վենետկոյ Ս. Ղազարու մատենադարանին ձեռագրաց վրայ, — այլ նաեւ խնամով համեմատեցի Փարիզի Ազգային Մատենադարանին (Bibliothèque nationale) եւ Երուսաղէմայ Հայոց Պատրիարքութեան Գրատան մէջ պահուած լաւագոյն ձեռագիրներին, եւ նաեւ համոզուեցայ որ Էջմիածնի Վանաց Մատենադարանի ձեռագիրքն ալ չեն յաւելուր բան մ'այն աղբիւրներուն վրայ, զորոնք գործածած էի: Կանխատես չէի կրնար ըլլալ որ այս ամէնէն ետքն ալ ի փախպիտի գտնէի հեղինակիս մէկ ձեռագիր օրինակն, որ միակն է հնութեան, ճոխութեան եւ մատենագրական արժէքին կողմանէ:

§ 2. Այսպիսի համեմատութեան մը՝ ինչպիսի է յաջորդն, յարգը կախուած է երեք պայմաններու կատարուելէն.

ա) Թարգմանութիւնը պէտք է հին ըլլալ:

բ) Պէտք է որ այն թարգմանութիւնն բառական ըլլայ, այնպէս որ արդեամբք անդրադարձ ցոլացընէ այն յոյն բնագիրն՝ որմէ թարգմանուած է:

գ) Պէտք է որ այն թարգմանութեան ախաւն օրինակ մ'ունենանք, այսինքն՝ այնպիսի օրինակ մ'որ ընդօրինակողներու աղաւաղմունքներէն զերծ ըլլայ եւ իւր վկայութեան յարգը չնուազի՝ իւր յետնագոյն ժամանակի մէջ կրած խմբագրութեամբք:

Արդ այստեղ այլեւայլ յոյն բնագրաց հետ համեմատուած հայ թարգմանութիւնքն ոչ

*մէկ ձեռքէ են եւ ոչ նոյն ժամանակի, եւ ոչ նոյն ճոխութիւնն ունին: Մանաւանդ թէ հետազօտելով զանոնք այն վերը նշանակած երեք պայմաններուն նկատմամբ, որոնցմով իրենց վկայութեան արժէքը կ'որոշուի, ասոնք այն երեք խմբերու կը վերաբերին՝ որոնց զասոնք վերը բաժնեցի: Մեր այս ներկայ Նախաբանութեան մէջ իւրաքանչիւր խումբն պիտի քննուի, որպէս զի տեսնենք թէ ինչպէս կը լնու այն՝ այս այլեւայլ պայմանները:*

§ 3. Ստորոգութիւնք եւ Յաղագս Մեկնութեան: *Այս թարգմանութեան ժամանակին ու ունեցած ճոխութեան նկատմամբ՝ երեք տեսակ ցուցում կայ, որ են*

ա) *Ոճ ու այլ ներքին ապացոյցք:*

բ) *Բուն իսկ ձեռագրաց մէջ եղած ստորագրութիւնք:*

գ) *Վկայութիւնք հին մատենագրաց եւ պատմական աւանդութիւն:*

*Այն ոճն՝ որով գրուած է այս թարգմանութիւնն, է աններկբայ հայ գրականութեան առաջին կամ ոսկեղէն դարու ոճն, որ յընդհանուրն կը համընթանայ Հինգերորդ դարուն հետ. Այս դարու մէջ թարգմանուեցան ի հայերէն Եօթանասնից գիրքն, ինչպէս նաեւ այն յունական Հարց գրութիւնքն՝ որ այն ժամանակ ուղղափառ եկեղեցւոյ մէջ ժողովրդական էին: "Ստորոգութեանց" եւ "Յաղագս Մեկնութեան" գրոց թարգմանութիւնն յունամոլ ոճով գրուած են, ինչպէս նաեւ Դիոնիսիոսի Թրակացւոյ Քերակա-*

նութեան հայերէն փոխադրութիւնը. արդեամբք ալ գրեթէ աւելի յունարէն է հայերէն բառերով: Ոչ միայն ամէն մէկ բառ, այլ նոյն իսկ բարդ բառի մը առանձին մասերն ստրկական ճշդութեամբ թարգմանուած են: Նոյն ժամանակ եղած այլ թարգմանութիւնք Ս. Գրոց եւ յունական Ս. Հարց՝ աւելի լաւագոյն ոճով են. արդեամբք ալ հայերէն Ս. Գիրքն զուտ գրաւոր տեսակէտով կը համարուի նոյն աստիճանն ունենալ, զոր ունին մեր իսկ (այսինքն՝ անգղիական լեզուի) կամ Լուտերի թարգմանութիւնքը: Այժմ խնդիր կը յառնէ թէ ինչո՞ւ արդեօք Ե դարու հայ թարգմանիչք, որ անկախ ու անխառն հայալեզու ոճ մ'ունէին, Արիստոտէլի այս ճառերն այսպէս ստրկօրէն թարգմանած են: Քանի մը հայազգի քննադատք կ'առարկեն թէ թարգմանութեան այս յունամոլ ոճն իրենց հելլենական կրթութեան յետնագոյն ժամանակի արգասիքն է, ուստի եւ Արիստոտէլի թարգմանութեանց ժամանակն այս պատճառաւ կը դնեն Ե դարու բուն վերջերն կամ Զ դարու սկիզբն: Սակայն ես այս ցուցման մէջ ստիպիչ ապացոյց մը չեմ տեսներ: Ընդհակառակն պէտք ենք նկատել որ անկախ ոճն աւելի ուշ ժամանակի զարգացումն ըլլալու է այս երկու ոճերու մէջ. զուտ գրական պատճառներով աւելի միտեալ պիտի ըլլայի այս թարգմանութիւնքն վերագրել Պրոյերեսիոսի ժամանակին, Աթէնքի մէջ ճարտարխօսութեան այս հայ ուսուցչին, որ մեզ այնչափ ընտելացած է Եւնապիոսի պատմածներէն:

§ 4. Երկրորդ ապացոյցն այժմ պիտի տեսնենք։ Ամէն ձեռագրաց մէջ, բաց ի Նորագոյն սակաւ ձեռագրերէ, Արիստոտէլի բնագիրն առանձինն եւ անընդհատ չենք գտներ, այլ բաժիններու բաժնուած, որոնց կցուած կ'ըլլայ յատուկ մեկնութիւն մը։ Արդ հետեւեալ խնդիրքս կը ծագին։ Ո՞րն է այս մեկնութիւնն որ պահուած է հայերէնին մէջ։ Թարգմանութի՞ւն է այն յոյն բնագրի մը։ Եւ եթէ այո, արդեօք միեւնո՞յն ձեռքէ եւ նո՞յն ժամանակ թարգմանուած են բնագիրն ու մեկնութիւնը։

§ 5. Նկատելով մի միայն ոճն՝ կրնանք թէ բնագրին եւ թէ մեկնութեան թարգմանութիւնն միեւնոյն անձին տալ։ Այս երկուքին մէջ եղած լեզուի դոյզն տարբերութիւնքն կրնան մեկնուիլ այնու որ մին Արիստոտէլի յունարէն բնագիրը կը դնէ մեր առջեւ փոխադրուած, եւ միւսը՝ Արիստոտէլէն առնուազն եօթը դար կրտսերագոյն յունարէն բնագիր մը։ Բաց աստի նաեւ հայերէն լեզուաւ մեկնութեանս մէջ յառաջ բերուած բնագրի վկայութիւնք բոլորովին կը միաբանին բնագրին հայ թարգմանութեան հետ. իսկ ուր որ դոյզն տարբերութիւն կայ, կրնանք ենթադրել թէ յոյն մեկնիչն արդէն այն տեղ բոլորովին ճշգրիտ կոչումն չէր ըրած իւր յոյն բնագրէն։ Արդեամբք հայ բնագրին եւ հայ մեկնութեան մէջ այնչափ ընդհանուր համաձայնութիւն կայ, որ դիւրին չէ ըմբռնել՝ թէ ասոնք այլեւայլ ժամանակ եւ այլեւայլ անձինքներէ թարգմանուած ըլլան։

§ 6. Սակայն այս կարծեաց մէջ դժուարութիւնք ալ կան: Օրինակի համար Յաղագս Մեկնութեան գրոց մէջ՝ էջ 16a, 27 տեղը "ոչ ինչ է„ խօսքէն ետեւ ամէն հայ ձեռագիրք, ի բաց առեալ Cod. Ticinus ձեռագիրը, սա խօսքերը կ'աւելցընեն՝ "Թէպէտ են ըստ բնութեան ձայնք ընդ գրով անկեալ, սակայն անուանք ոչ:„ Արդ այս բառերն անշուշտ չկային յոյն բնագրին մէջ, վասն զի յոյն ձեռագիրք չունին այսպէս բան եւ նաեւ Փաւիայի հայերէն ձեռագիրը չունի այս ընթերցուածը: Սակայն միւս կողմանէ կ'երեւայ թէ մեկնութիւնն այս խօսքերը կը բովանդակէ, վասն զի հոն այսպէս կը կարդանք. "Ձի ըստ շարադրութեան զանուանսն, այլ ոչ ըստ բնութեան կամի գոլ բաղումն. յաղագս այսորիկ յառաջագոյն ասացաւ: Յիշէ սակայն եւ աստանօր զձայնս ոմանս լեալս՝ եւ ընդ գրով անկեալս, այլ սակայն ոչ եւս անուանս:„ Այս խօսքը կրնանք այսպէս թարգմանել՝ ὅτι κατὰ συνθήκην εἰσίν :* Եւ այս կտորը կը գտնուի ամէն հայ ձեռագրաց մէջ՝ նաեւ Փաւիայի ձեռագիրն ի միասին առեալ:

* Այստեղ հեղինակն հայ բնագրին յունարէն թարգմանութիւնը կը դնէ ամբողջովին, զոր ընելն աւելորդ էր հայ ընթերցողին համար: Նաեւ քիչ մը վերը եղած կոչմունք հեղինակը յունարէն դրած էր, իսկ մենք հայերէնն դրինք: Այսպէս ըրած ենք ուրիշ տեղեր ալ: Նոյն տեղ յիշուած կոչման թիւն (16a, 27) ըստ իւր հրատարակութեանն է. որ գրքին վերջն դրուած է. իսկ Վենետկոյ տպագրութեան մէջ (տպ. 1833)՝ էջ 498, 23:

Ծ. Թարգմ.:

Սակայն չի կրնար այս կտորն իբրեւ ապացոյց բերուիլ որ հայերէն բնագիրն ու մեկնութիւնն իրարմէ անկախ թարգմանուած են: Թէ այս կտորը մեկնութենէն առնելով սպրդած մտած է նաեւ Արիստոտէլի քանի մը հայ ձեռագիր բնագրաց մէջ, յայտնի բան է անկէ որ նոյնը չի գտնուիր Cod. Ticinus ձեռագրին մէջ. եւ ոչ ալ նոյն իսկ մեկնութիւնն անհրաժեշտ կը պահանջէ բնագիր մ'որուն մէջ այս բառերը գտնուին: Ըլթէ նաեւ այսպէս իսկ ըլլար, այս անմիաբանութիւնը յառաջ եկած ըլլալու է բնագրին ու մեկնութեան կրկին յունարէն սկզբնագիր ըլլալէն:

§ 7. Ընդունելով ուրեմն որ բնագրին թարգմանութիւնը ժամանակակից է մեկնութեան թարգմանութեան, կրնա՞նք վերջնոյս ժամանակն ու ճոխութիւնը որոշել: Ստորոգութեանց եւ Ցաղագս Մեկնութեան գրոց այս հայերէն մեկնութեանց մէջ զարմանալի եղանակաւ շատ քիչ կռուաններ կան՝ անոնց յոյն սկզբնագրին յօրինման ժամանակն որոշելու համար: Սակայն թարգմանութեան ժամանակին համար նշան մը կը գտնուի, զոր ցուցուց ինձ իմ բարեկամս Պարոնեան Վրդ. ի Մանչեսթըր: Մեկնութեան մէջ Վարդան անուն անձ մը կը յիշուի իբր օրինակ քաջութեան. այսպէս յիշուած Վարդան անունն ուրիշի մը դժուարաւ կրնայ ըլլալ, բաց միայն այն զօրավարին՝ որ Պարսից դէմ մղած ճակատամարտին մէջ ինկաւ՝ 451ին Յ. Ք: Ուրեմն եթէ այս անունն ընդմիջարկեալ

յաւելուած չէ, Հայերէն մեկնութիւնն եւ անոր հետ կապուած բնագրին թարգմանութիւնը չենք կրնար Ե գարու կիսէն աւելի կանուխ դնել:

§ 8. Այժմ կ'անցնինք Հայերէն ձեռագրաց մէջի ստորագրութեանց ապացուցին: Այս մասին շատ ծանրակշռութիւն դնել չենք կրնար. վասն զի թէեւ ամէն կրտսերագոյն ձեռագրաց մէջ կ'աւանդուի որ այս ճառերն թարգմանած ու մեկնաբանած է “մեծ եւ անյաղթ փիլիսոփայն Դաւիթ„, սակայն փաւիայի ձեռագիրն՝ որ ճոխութեան կողմանէ.քան զամէնը շատ գերազանց է, այսպիսի տեղեկութիւն մը չունի: Այս ձեռագրին մէջ բնագիրն ու մեկնութիւնը պարզապէս սա վերնագիրն ունին “Ստորոգութիւնք Արիստոտէլի.„ եւ Ստորոգութիւններէն ետքը կուգայ՝ առանց դատարկ տեղ մը թողլու եւ առանց որեւիցէ տիտղոսի մը՝ “Յաղագս Մեկնութեան„ գրոց թարգմանութիւնն ու անոր մեկնութիւնը: Այս ձեռագրին լռութենէն կրնանք մակաբերել որ այս թարգմանութիւնքս եւ մեկնութիւնն Դաւիթ “մեծ եւ անյաղթ փիլիսոփային„ վերագրելը համեմատաբար ուշ ժամանակի առասպել մըն է. եւ մեր այս մակաբերութիւնն ստուգութեան կը հասնի, երբ Հայերէն այսպէս ըսուած Դաւթի մեկնութիւնը համեմատենք այն մեկնութեանց հետ, որ յունարէն ձեռագրաց մէջ ἀπὸ φωνῆς Δαβίδ (“Ի ձայնէ Դաւթի„) տիտղոսը կը կրեն: Դաւթի անուամբ այս յունարէն մեկնութիւնք՝ գոնէ որչափ որ ի վկայութիւն եւ-

չուած կը գտնենք Արիստոտէլի Պերլինի Հրատարակութեան չորրորդ հատորին մէջ, բոլորովին անճանաչելի են Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց հայերէն այս մեկնութեան մէջ:

§ 9. Այս հետեւութիւնը կը հաստատուի հին հայ գրչաց վկայութեանց եւ ակնարկութեանց ցուցմամբն:

Հայկական միայն կրտսերագոյն աւանդութիւնք, ինչպէս նաեւ միայն կրտսերագոյն ձեռագրաց վերնագրութիւնք են, որ Դաւթի Անյաղթի կ'ընծայեն այս մեկնութիւնքն եւ թարգմանութիւնք Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց: Նոյնը կրնանք ըսել նաեւ յաջորդ գրութեանց եւ թարգմանութեանց վերջին երկուքին համար ալ, որ հայերէնին մէջ կը գտնուին՝ Դաւթի Անյաղթի ընծայուած:

ա) Սահմանք իմաստասիրութեան ընդդէմ Պիւհոնի (Pyrrhon): Այս գործքը կը գտնուի յունարէնին մէջ սա վերնագրով՝ Τὰ προλεγόμενα τῆς φιλοσοφίας ἀπὸ φωνῆς Δαβὶδ τοῦ θεοφιλεστάτου καὶ θεόφρονος φιλοσόφου.[1] (Նախաբանութիւնք իմաստասիրութեան ի ձայնէն Դաւթի՝ փիլիսոփայի աստուածասիրի եւ աստուածիմաստի:)

բ) Թարգմանութիւն Ներածութեան Պորփիւրի, եւ սորա վրայ մեկնութիւն մ'ի Դաւթէ:

գ) Ընդարձակ հատակոտոր մը մեկնութեան

[1] Տես Արիստոտէլի Պերլինեան հրատարակութիւն, հատ. Դ. եւ Crameri Anecdota Parisiensia.

Արիստոտէլի վերլուծութեանց: Այս թարգմանութիւնն ալ եղած է յունարէն մեկնութենէ մ'որ՝ որչափ կ'երեւայ, նոյն Դաւթէն գրուած էր Դ կամ Ե դարու մէջ:

դ) Թարգմանութիւն Գրիգորիոսի Թրակացւոյ հանդերձ մեկնութեամբ: Կ'երեւայ թէ նոյն ձեռքը թարգմանած է զայս, որ թարգմանեց նաեւ զՍտորոգութիւնքն եւ Յաղագս Մեկնութեան գործն:

ե) Թարգմանութիւն Արիստոտէլի անուամբ յորջորջուած "Յաղագս աշխարհի„ եւ "Յաղագս Առաքինութեանց„ գործոց:

§ 10. Ութերորդ դարու առաջին մասին մէջ կ'երեւայ թէ Ստեփանոս Սիւնեցի՝ մեկնութիւն մը գրած էր Դիոնիսիոսի քերականութեան վրայ, եթէ այն մեզ չհասնինք վկայութիւնք թէ ինքը թարգմանած ըլլայ քերականութիւնը, որ սակայն անկարելի կ'երեւայ: Այս միեւնոյն հեղինակին քով բացորոշ յիշատակութիւն մը կայ Դաւթի Սահմանաց[2]: Այս տեղն է այսպէս. "Արդ թէ զինչ է բնութիւնս մեր, յատկապէս ուսաք ի Դաւթայ եռամեծէ, այն՝ որ ընդդէմ Ակադեմայցն եւ Պիւռհոնացեացն դիմակայէ քաջապէս, որք ջանային եղծանել զգոյութիւն իմաստութեան:„

Դարձեալ վերը յիշուած շատ մը թարգ-

---

[1] Հ. Գար. Վ. Զարբ. Մատենադարան Հայկական թարգմանութեանց Նախնեաց (Դ—ԺԳ դար:) Վենետ. 1889. էջ 395:

[2] Հայկական հին դպրութեան պատմութիւն (Դ—ԺԳ դար:) Վենետ. 1886. էջ 301:

մանութեանց ակնարկութիւններու կը հանդիպինք ԺԱ դարու առաջին կիսուն՝ Գր. Մագիստրոսի թղթակցութեանց մէջ, այնպիսի ակնարկութիւններ՝ որ կը ցուցընեն թէ ասոնք ամէնն ալ այն ժամանակ Հայոց աշխարհին մէջ կը շրջէին: Այս Գր. Մագիստրոս այն է որ Կոստանդին Մոնոմախոսի ձեռքէն առաւ Միջագետաց Դուքս տիտղոսը, եւ մեռաւ 1058ին: Ինքն այս գրութիւնքը կը յիշէ բաւական հետաքրքրական նամակի մը մէջ, որ ուղղուած է Բարսեղ եւ Եղիշէ երկու աշակերտաց, եւ որ արժանի է հոս երկարօրէն ի մէջ բերելու. եւ է այսպէս. "Այլ լուայ եթէ Աստուծոյ փոխանդ մեր տուեալ է ձեզ Արիստոտէլ, կամիք թէ առաքէք դա մեզ. քանզի նախ պարտ է զքերականութիւնն հանդերձ թարգմանութեամբն ուսանել տիրապէս մակտացականութեամբ, եւ զկնի այսր հռետորականն երիւք հանդիսիւքն անսխալ տրոհութեամբ: Եւ ապա զՍահմանողացն պարունակել եւ զՊղատոնական եւ Արիստոտելական, եւ դարձեալ պիթագորական կարակնակերտութեանն բացորոշմանց եւ դատողութեանց: Նախուստ քան զայսոսիկ կրթեցելովք ներկուռ վերծանութեամբ զհին եւ զնոր կտակարանս, եւ առասպելաբանութիւնս ի բազում եւ զանազան տեղիս զեղեալս, զոր քննութեամբ արտայայտել հաւանիմք, եւ ի խոյզ ելանել ջերմագոյն եւ քաջողջական խոհականութեամբ եւ տրամաբանական հատուածոց՝ հոմերական եւ պղատոնական նախասականին, եւ այլոցն բոլոր արուես-

տից եւ մատենից. զի յամենայնի իմաստասէրն խոստովան լիցի զգիտութիւն եւ ուրացեալ զանգիտութիւն, մանաւանդ ըստ կարողութեան քառից արուեստից՝ թուական, երաժշտական, երկրաչափական, աստեղաբաշխական. այսոցիկ հետեւել բաւական է այս. իսկ (եթէ) Արիստոտէլի հաւաքմունքդ այն է որ ասացեալն է՝ “Յաղագս երկնային մարմնոցն եւ գնդատես[ակ]ութիւն երկրի.„ կամ “Յաղագս Օրէնսդրութեան կենցաղոյս,„ յորս յիշատակէ եւ զորակութեանց քակտումն եւ զախտիցն բաժանմունսն, զոր անուանեն՝ խորհրդական, առաքեա այսր զդա: Ապա եթէ միայն Պորփիւրի Առասութիւնքն իցէ՝ բացորոշեալ ի խնդրոյ Քրիսաւորին՝ հնգիցն ստորոգութեանցն, որք են այսոքիկ՝ սեռ, տեսակ, տարբերութիւն, յատուկ եւ պատահումն. կամ թէ ութիցն, որք են՝ դիտաւորութիւն, պիտանացուն, պատճառ, մակագրութիւն, կարգն, վարդապետական եղանակն, թէ առ ինչ մասն տարբերումն կամ զիւրն՝ Ստագիրացւոյն՝ գոյացութիւն, որակ, քանակ, ուր, երբ, կալ, ունել, առնել, կրել. — այսոքիկ ոչ են մեզ ըղձալի ի հեռաստանէ զսոսա խնդրել. քանզի տրամադրութիւնքս այս վաղ ուրեմն պատահեաց մեզ՝ մինչ տակաւին պատանեակ եղելոյ:„

Այս նամակը կը գտնուի այս հեղինակին նամակաց հաւաքածոյ մէկ ձեռագրին մէջ որ կը պահուի Միւնխէնի մատենադարանին մէջ. (Cod. Arm. 4.) Նոյն ձեռագրին 39երորդ էջին վրայ՝ Գրիգոր կը յիշէ “Աթենական ստորոգութիւնք„

որով անշուշտ Ստագիրացւոյնը կը հասկընայ. յէջն 235՝ կը յիշէ Ներածութիւնն, եւ յէջն 45՝ ի վկայութիւն կը կոչէ Դաւթի Սահմանք գրութիւնը: Տարակոյս չի կրնար ըլլալ որ այս մատենագրին ակնարկութիւնքն այս ճառերուն հայերէն թարգմանութեանց ուղղեալ են եւ ոչ թէ անոնց յոյն բնագրին: Նշանակալիցն այն է որ Արիստոտէլի թարգմանութեանց հետ միասին յիշատակութիւն չէ ըրած Դաւթի Անյաղթի: Նոյն ձեռագրին 186 էջին մէջ կը յիշէ թէ գտած է հին հայերէն թարգմանութիւն մը "Ողիմպիոդորոսի, զոր յիշէ Դաւիթ„[1] եւ Միւնխէնի նոյն ձեռագրին 209 էջին վրայ կ'երեւայ թէ ակնարկութիւն կ'ընէ Դաւթի այնպիսի տեղ մը, ուր կը պաշտպանէ իմաստասիրութիւն գրող հայ մատենագրաց այն պահանջմունք որ անկախ խորհող համարուին եւ ոչ լոկ թարգմանիչք յունական գրոց: Տեսանք նաեւ որ Ստեփանոս Սիւնեցի երեք դար յառաջ Դաւթի կ'ընծայէ Սահմանքն: Պնդեցինք նաեւ այն իրողութեան վրայ որ փաւխայի ձեռագիրը չի յիշեր Դաւիթ մ'իբր թարգմանիչ կամ մեկնիչ: Ասկէ կրնանք հետեւցընել որ Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց թարգմանութիւնքն եւ անոնց մեկնութիւնք ԺԱ դարէն յառաջ ծանօթ չէին իբր Դաւթի գործ:

§ 11. Ո՞վ է այս Դաւիթն, որուն անունը կը կրեն Իմաստասիրութեան Սահմանքն

---

[1] Այսինքն է Դաւթի Սահմանաց մէջ. տես տպ. Վենետ. էջ 143 եւ 164:

(Prolegomena Philosophiae) եւ Ներածութեան մեկնութիւնը՝ թէ յոյն եւ թէ հայ բնագրաց մէջ հաւասարապէս: Ի՞նչ ազգէ էր: Ե՞րբ ապրեցաւ եւ ո՞ւր:

Այս խնդրոց մասամբ պատասխանը գտած կը կարծէ Վալենդին Ռոզէ (Valentine Rose) գիտնականն յունարէն ձեռագրի մը Ս. Դաւթի Թեսաղոնիկեցւոյ մէկ կենսագրութեան մէջ, զոր Բրուսիական կառավարութիւնը գնեց Պլէնհայմի (Blenheim) գրատնէն, եւ այժմ ի Պերլին է: Ռոզէի 1887ին ի Պերլին հրատարակած այս ճառէն կ'իմանանք որ Դաւիթ սուրբ եւ անապատական անձն մըն էր, հրաշագործ. որ ծերացեալ եկաւ Բիւզանդիոն, եւ տեսակցութիւն ունեցաւ Յիքնակալ կայսեր եւ կայսրուհւոյն հետ, որոց վրայ մեծ ազդեցութիւն ըրաւ իւր տարիքն ու սրբութիւնը: Նման պատմութիւն մ'ալ կը պատմէն բնիկ հայ պատմագիրք հայազգի իմաստասիրի մը վրայ[1]: Աստնցմէ կ'իմանանք որ Դաւիթ իւր ուսմունքն յԱթէնս աւարտելէն ետեւ՝ Բիւզանդիոնի արքունիքը կ'երթայ, եւ Յիքնակալին ներկայութեամբ հեթանոս իմաստասէրները կը յաղթահարէ: Սակայն այս յոյն սուրբին ամենէն հետաքրքրական կէտն նոյն ինքն այն է որ հայազգի մըն էր հաւանականաբար՝ նոյն իսկ ըստ յունական տեղեկութեանց: Այսպէս Ռոզէ կը բերէ ի վկայութիւն զՅովհաննէս Մոսքի

[1] Տես այս նկատմամբ պատմուածն ի գիրս Հ. Գար. Վ. Զարբ. (Հայկական Հին Դպրութեան Պատմութիւն տպ. Վենետ.) էջ 299:

(Moschi) առ այն՝ թէ այս Դաւիթս ծննդեամբ ի Միջագետաց էր. եւ Վասիլ կայսեր Ցայսմաւուրքին մէջ Յունիս ամսոյն մէկ օրը նուիրուած է ի յիշատակ "Սրբոյ Հօրն մերոյ Դաւթի Թեսաղոնիկեցւոյ, որ եկն յԱրեւելից:„ Սակայն յոյն այս տեղեկութիւնք չեն յիշեր ամենեւին որ Դաւիթ իմաստասիրականաց հետամուտ եղած ըլլայ, մինչդեռ Հայ աւանդութիւնք այս վերջինս կ'աւանդեն առաւելապէս. եւ Թոզէ կը մակաբերէ որ ծերացեալն Դաւիթ հեթանոսական իմաստասիրութեան զգայական հետապնդութիւնը լքած՝ ինք զինքը տուած է քրիստոնէական ճգնութեան անձնուրաց կենաց:

§ 12. Աւելի վստահելի պատասխան մը կու տայ ձեռագիր ճառ մ'որ Էջմիածին կը պահուի եւ "Գիրք Էակաց„ կը կոչուի: Ձեռագիրն հին գրքի մը յիշատակարանը յառաջ կը բերէ՝ որմէ ինքն օրինակուած էր, այսպէս*. "Մամբրէ

* Հեղինակն այս յիշատակարանին հայերէն բնագիրը չէ դրած. այլ միայն անգղիերէն թարգմանութիւնը: Մայր Ցուցակի մէջ ալ չգտնելով այսպիսի յիշատակարան մը՝ ստիպուեցանք անգղիերէն բնագրէն աշխարհաբար թարգմանել յիշատակարանս: Այսպիսի հանգամանաց մէջ յայտնի է որ բուն յիշատակարանին եւ մեր այստեղ թարգմանաբար դրածին մէջ մեծ տարբերութիւնք կրնան ըլլալ: Սակայն բարեբախտաբար այն հնագոյն յիշատակարանը հրատարակած կը գտնենք "Նոր-Դար„ թերթին մէջ (1890, Թ. 133, էջ 2, սիւն դ. և:) Այստեղ Գր. Ց. Գասպար իւր Օձունի մէջ գտած ուրիշ ձեռագրաց հետ գտած կ'ըսէ „21 թերթից բաղկացած մի տետրակ" սոյն այս վիճաբանութեան, եւ կը դնէ յիշատակարանն այսպէս՝ "Յետ բազում ժամանա-

եւ Պաւղոս եւ Աբրահամ գրեցին ճառեր լի ուշագրաւ խորհուրդներով, եւ երկար ժամանակէ ետքն գրուեցաւ այս գիրքն, այնպէս՝ որպէս աւանդած էր մեզ Աստուած: Այս ժամանակ, այսինքն յամի Հայոց ՀԶ (= 629 Յ. Ք.) ես Գուրգէն՝ քարտուղար Հայոց Մեծաց, եւ սպարապետ (spatharius) սրբոց վարչաց “Պռոյ„ ստացայ այս գիրքը: Բայց պէտք է նշանակել, այս Գրոց Իւակաց հին յիշատակարանին մէջ, թէ գրուած էր այս՝ թարգմանութեամբ յունականէն ի հայերէն հրամանաւ Տեառն Յովհաննու կաթուղիկոսի Հայոց գաբեղենացւոյ (տես Մ. Խոր. Պատմ. Բ. 7), յամի Հայոց ԻԵ (= 578 Յ. Ք.) կը վկայէ տէր Սարգիս արաքացի եպիսկոպոս՝ ճշմարիտ վկայութեամբ: Օրհնութիւն, փառաբանութիւն եւ փառք եւ պատիւ Հօր, եւ Որդւոյ եւ Ս. Հոգւոյն, այժմ եւ յաւիտեանս:„

Հոս ուրեմն ունինք յունական աղբիւր մը թարգմանուած հայերէն արդէն յամի Տեառն

---

*կաց գրեաց Մամբրէ զգիրս այս եւ նման առ մեզ ի ժամանակս այս յորում ՀԶ էր թուականն Հայոց (= 627 Յ. Ք.:) Ես Գէորգեան քարտուղարս Հայոց Մեծաց եւ սուրբ թագաւորաց ստացայ զսա, որ ասի գիրք Ըակաց. որ գրեցաւ ի ԻԵ թուականութեանն Հայոց (= 576 Յ. Ք.), որ զկնի ՀԶ թուին (= 627 Յ. Ք.) թարգմանեցաւ ի յունաց ի հայս հրամանաւ Տեառն Յովհաննէսի կաթուղիկոսի Գաբեղենացւոյ, եւ վկայէ զորս այսմիկ Սարգիս արաքացի եպիսկոպոս ճշմարիտ վկայութեամբն. որ եւ մարդասիրին փառք զօրութիւն անզրաւ յաւիտեանս ամէն:„ Քանի մը կարեւոր տարբերութիւնք՝ որ այս յիշատակարանաց մէջ կը տեսնուին՝ մտադրութեան արժանի են:* ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

578, բայց չենք գիտեր թէ ինքը բուն որչափ աւելի հնագոյն էր. բայց իւր բովանդակութենէն կը տեսնուի որ իբր 530 Յ. Ք. ժամանակներէն պիտի ըլլայ: Անոր վերնագիրն է "Վիճաբանութիւն սրբոց վարդապետաց Հայոց Մովսէսի եւ Դաւթի ընդդէմ հերետիկոսաց որ բաժանեն զբնութիւնս:„ Ինչպէս այս տիտղոսը կը ցուցընէ, գրութեանս մեծ մասն երկար ու տաղտկալի հակաճառութիւն մըն է ընդդէմ Նեստորականաց որ իբր թէ Եփեսոսի ժողովքին մէջ արտասանուած ըլլայ: Այս հակաճառութեան սկիզբն ու վերջը պատմական կտոր մը կայ նոր յունական ուսման ի Հայս տարածուելուն նկատմամբ: Սկզբան մասէն կ'իմանանք որ Դաւիթ Անյաղթ, որ փիլիսոփայ կը յորջորջուի, մին էր այն հինգ հայ ուսանողներէն, որոնք Ե դարու սկիզբն՝ Թէոդոսի հրաւիրելովն՝ Կ.Պոլիս գացին յունարէն սորվելու եւ Ս. Գիրքն հայերէն թարգմանելու: Իրեն հետ էին Մովսէս Քերթող, Մամբրէ Իմաստասէր, Աբրահամ Ճարտասան եւ Պաւղոս: Ուսման կարճ ժամանակամիջոցէ մ'ետքը ի Կ.Պոլիս՝ յոյն ինքնակալն առաքեց զԴաւիթ ի Հայս՝ իւր ծննդեան երկիրն, որպէս զի վերատեսուչ ըլլայ Երիւանայ մերձակայ Գառնւոյ ամրացման, որ հին ամուր բերդ մըն է, որուն Հռոմայեցիներէն պաշարուիլը կը պատմէ Տակիտոս, եւ զոր նախընթաց դարուն մէջ վերանորոգած էր արքայն Տրդատ: Անկէ Կ.Պոլիս դառնալով՝ Դաւիթ անգամ մ'ալ խնդրեց ինքնակալէն որ խաւրէ զինքն յԱթէնս ուսանելու. իւր

խնդիրքը կատարուեցաւ, եւ իւր ընկերաց հետ Աթէնքի մէջ կայսեր մասնաւոր հովանաւորութեան եւ պաշտպանութեան տակ մտան: Ժամանակագրական մեծ սխալով մը կ'ըսուի թէ հոն ընկերակից եղաւ Բարսղի Կեսարացւոյ եւ Գրիգորներու: Գրիգոր Նիւսացի եւ իւր եղբայրն Աստուածախօսն Նազիանզացի արդեամբք ալ կը հրաւիրեն զԴաւիթ՝ Աթէնքի մէջ իմաստասիրութեան ուսուցչական գլխաւոր գահը գրաւել առնուլ, եւ թէ ինքն եւ թէ Դաւիթ երեսուն տարի կը մնան Աթէնք իբրեւ ուսուցիչ: Ասկէ ետքը կու գայ իրենց մեծ վիճաբանութիւնը Նեստորիոսի դէմ յԵփեսոս 431ին, եւ իրենց այնտեղ արտասանած հակաճառութիւնքն այս գրքին մեծ մասը կը լեցընեն: Ժողովքէն ետքն ինչնակալը զիրենք հայրենիք կը խաւրէ՝ շատ մը պարգեւներով, — որոնց մէջ կայ ճշմարիտ խաչին մէկ նշխարքը, — եւ զինեալ շատ մը գրքերով, զորոնք իրենց Յունաստան կեցած միջոցին թարգմանած էին իրենց մայրենի լեզուին: Դառնալով ի Մեծ Հայս՝ կը գտնեն իրենց ուղղափառ հայրենակիցները Պարսից Յազկերտ արքային հետ այն օրհասական կռուին մէջ, յորում ինկաւ Վարդան քաջն: Այս դէպքն եղաւ 451ին՝ Եփեսոսի ժողովքէն 20 տարի ետքը: Ապա կը շարունակէ գրութիւնը*). Մովսէս եւ

* Այս կտորն ալ ստիպուեցանք անգղիերէնէն թարգմանել. վասն զի հայերէն բնագիրն չունէինք ձեռքերնիս: Մեր Մատ. Թ. 130 ձեռագիրն այս մասերը չունի. (տես Թղ. 69—74:) Նաեւ Պր. Յ. Գասպար չէ

Դաւիթ կը ջանային չցուցընել իրենք զիրենք Հայոց աշխարհին մէջ, վասն զի Աթենականք էին եւ ծերացեալք արդէն, եւ Հայոց աշխարհն աւերեալ էր: Մովսէս ծպտեցաւ իբրեւ մուրացիկ, եւ առանձնացաւ գիւղ մը դաշտին մէջ, իսկ իւր ընկերք Դաւիթ, Մամբրէ, Պաւղոս եւ Աբրահամ յառաջացան մինչեւ Երիւան, ուր պատուով ողջունեց զիրենք Տէր Գիւտ՝ հին ուսումնակից Մովսէսի, եւ այժմ կաթողիկոս Հայոց: Նաեւ Մովսէսի համար լաւագոյն օրեր պահուած էին. փնտռեցին զինքն ու գտան, եւ ընդդէմ իւր բողոքանաց՝ թէ այժմ ալ օտար է այնչափ տարի Եղլադա անցընելէն ետեւ, ձեռնադրուեցաւ արքեպիսկոպոս: Անմիջապէս սկսաւ եւ գրեց իւր Հայոց Պատմութիւնն, եւ իւր Քերականի Մեկնութիւնն, եւ նաեւ Ճառակնոց մը ի պէտս եկեղեցեաց. իւր հայրենակիցներն յայտնապէս ուսուցաներն արգելուած էր իրեն այն դժնդակ ժամանակը: Դաւիթ ալ գրեց իւր Սահմանաց գիրքը (Prolegomena Philosophiae) եւ նաեւ իւր Քերականի Մեկնութիւնն. եւ երկուքն բացին իրենց գանձերը՝ զոր այնչափ ժամանակ յառաջ սկսած էին մթերել:»

Այս հետաքրքրական գրքուկիս մէջ ժամանակագրական սխալներ մնած են անոր հե-

---

Հրատարակած այս մասն, որ բացի վերը յիշուած յիշատակարանէն՝ ըրած է միայն յառաջաբանութիւնն. վերջինս աւարտի այսպէս. «Որ եղեւ ի թուին փրկչին 466 այս վիճաբանութիւն, եւ զտան յաղթողք սորա եւ մեծաւ պատուով ի Հայս դարձան:» ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

ղինակին այն ջանքին պատճառաւ՝ որ նուազընէ Հայոց մտաւոր պարտականութիւնն առ Յոյնս: Սակայն այս մասն հաշուէն դուրս հանելով՝ պատճառ մը չկայ տարակուսելու՝ թէ Ե դարու առաջին կիսուն Աթէնք կ'ապրէր Դաւիթ անուն հայազգի մը, որ փիլիսոփայութեան ուսուցիչ էր: Նոյնպէս շատ հաւանական է իւր Մովսէսի հետ ի Հայս դառնալու պատմութիւնն: Այն դարու կէսերը պարսիկ կառավարիչք կ'արգելուին յունական գրքերն ու յոյն դպրութիւնն Մեծ Հայոց մէջ՝ քաղաքագիտական նպատակաւ. վասն զի կը կասկածէին իրենց հպատակներուն Յունական ինքնակալութեան հետ դաշնակցելուն: Յունական գրոց արգելուիլն խափանեց ու ընկճեց հայ գրականութեան զարգացումն՝ որ նորածիլ էր դեռ. բայց մտաւորական այս կապերու խզուելովն՝ որ սոյն ցեղը կը կապէր Կ. Պոլսոյ եւ Աթէնքի հետ, անկախ ազգային եկեղեցւոյ մը կանգնուելուն նպաստեց: Արիստոտէլի եւ Պորփիւրի վրայ այն մեկնութիւնք, զոր ունինք ἀπὸ φωνῆς Δαβίδ (ի ձայնէ Դաւթի) վերնագրոյն ներքեւ, շատ լաւ կրնան այս հայազգի ուսուցչին գործքն ըլլալ, որ 30 տարի կեցաւ Աթէնք՝ 406 եւ 451 Յ. Ք. տարեաց մէջ:

§ 13. Սակայն Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց վրայ եղած Մեկնութիւնքն առեղծուած մը կը մնան: Ցուցալով որ Արիստոտէլի ուսումնասիրողներէն ոմանք կարող պիտի ըլլան ասոնց ինչ բանի հետ նոյն ըլլալը գտնել, կը դնեմ հոս քանի մը օրինակներ: Իմ

փոխադրութեացս մէջ հարցական նշան կը դնեմ, ուր որ իմաստը տարակուսական է ինծ, եւ բաց տեղ կը թողում՝ ուր բնագիրն ընդհատեալ է:

Հրտ. Պէք.*) էջ 1a, 1

"Համանունութիւն լինի ըստ երկուս յեղանակս, ըստ պատահման կամ ըստ մտածութեան. մտածութիւն ըստ պատուոյ, ըստ յիշատակէ, ըստ յուսոյ, ըստ աղօթից, ըստ կերպարանի, ըստ նմանութեան........ կամ ըստ լծորդին պակասութիւն կամ նահատակ կամ միաձորձ:,,

Այս կտորին հետ համեմատելու է՝ Anonymi in Aristotelis Categorias Paraphrasis գործքն, որ հրատարակեալ է Արիստոտէլի յունական Մեկնութեանց հետ (Commentaria in Aristotelem Graeca, Vol. XXIII, pars II, pp. 1, 2.)։ Հայր այս յարասութեան (paraphrase) լոկ համառօտութիւնը կ'երեւայ: Համեմատելու է նաեւ Արիստոտէլի Պէրլիննեան հրատարակութեան (Vol. IV. p. 42b, 13) Դաւթի մէկ ծանօթաբանութեան սա խօսքը "աղէ ասասցուք զտարբերութիւն հոմանունանց. ոմանք ի սոցանէ ի դիպաց են:,, Բայց շարունակութիւնը՝ որ յունարէնին մէջ ասոր կը յաջորդէ, շատ ընդարձակ եւ աննման է հայոյն:

* Հեղինակն այստեղ՝ ինչէս նաեւ ուրիշ անգամներ յունարէն թարգմանելով կը դնէ հայերէնէն բերած կոչմունքն, իսկ մենք հայերէնը դնելով շատացանք: Յայտնի է որ Վենետիկոյ տպագրութեան մէջ Ստորոգութեանց Մեկնութեան սկզբան մեծ մասը կը պակսի (տպ. Վենետ. 1833, էջ 409:) Ուստի այս տեղ ի վկայութիւն կոչուածը դրինք ըստ ձեռագրին մեր Մատ. Թ. 96, թղ. 3a որ այս կտորներն ունէր իբր լուսանցագիր մեկնութիւններ, որով գիրքը երեքսիւնեան եղած է շատ տեղ:
ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

Հրտ. Պէք.*) էջ 1a, 6. “Փաղանուն վասն այնորիկ ասի, զի թէպէտ եւ զանազանի յանուան տեսակացն. զմի եւ զնոյն նշանակէ ըստ գոյացութեան բանի (–րդէ–) ի միոջէ (է–) ի մի:„

1a, 12**) “Հաւաստանայ եւ յարանունութիւն ըստ երեք յեղանակաց. միաբանիլ առաջնոյ վանգին եւ զանազանէ վերջին փաղառութեան, որոշումն իրին, որպէս առաքինի եւ առաքինութիւն ասելի է:„

1a, 16***) “Իբր զի բանին կրկին տեսակ է, եւ է որ 'ի խորհրդում, եւ է որ 'ի արտաբերութեան. եւ 'ի արտաբերութեանն է ձայն նշանակ. իսկ 'ի խոր[հր]դումն՝ իմացումն եւ պատկեր իրացն: Գիտելի՝ զի ոչ յամենայն ժամ ձայնքն եւ կամ իմացմունքն հետեւանան իրերաց, այլ երբեմն զձայնսն պատահէ գոլ պարզ, իսկ զիմացմունսն բաղադրեալս, որպէս՝ ընթանամ եւ կամ վերծանեմ, եւ է զի՝ ձայնքն բաղադրեալք, իսկ իմացմունքն՝ պարզ, որզան իբր թէ ոք ասասցէ՝ մարդ կենդանի, բանաւոր, մահկանացու. եւ է զի՝ ձայնքն պարզ եւ իմացմունքն. որզան Սոկրատէս կամ Հոմերէս. եւ է զի՝ ձայնքն բաղադրեալք եւ իմացմունքն, որզան՝ Սոկրատէս իմաստասիրէ, կամ Հոմերէս քերթողաբանէ:„

Հմմտ. Anonymi Paraphr. p. 5, 2—15:

---

* Թ. 96, Թղ. 3b: ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

** Թ. 96, Թղ. 4a: ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

*** Թ. 96, Թղ. 4a—b, բայց այս ոչ իբր լուսանցագրութիւն, այլ իբր մասն բուն մեկնութեան՝ որը վերնագիրն է “Լուծմունք ի Ամելախոյսի ասացեալ:„ Նաեւ Վենետկոյ տպագրութեան մէջ կը գտնուի այս կտորը բուն Արիստոտէլի Ստորոգութեանց ներքեւ ծանօթութեան մէջ դրուած, (տպ. Վենետ. 1833, էջ 360. ծ. 1) որ ըստ հրատարակչին՝ Արիստոտէլի բնագրին մէջ մուծուած էր իրենց ձեռագրին մէջ: ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

Ի բաց թողլով քանի մ'այլ միջանկեալ մեկնութիւններ՝ կը թարգմանենք հոս Ստորոգութեանց 1b, 25—2a, 10 մասին վրայ եղած Մեկնութիւնը։ Դժուարութենէ խորշելու համար թարգմանեցի անգլիերէն, տեղ տեղ գործածելով յունական ձեւերն՝ որ սեպհական ասութիւնք են իրին։

Հրտ. Պէք.*) 1b,25—2a,10

Ձեռնարկէ զերկրորդ տրամատութիւնս էակացն, որպէս յառաջագոյն ասացաք։ Յայսմ տեղւոջ ըստ տասն սեռից ընձեռեալ, վասն զի յերկուս յառաջագոյն բաժանեաց (դէ—կա) ի գոյացութիւն (οὐσία) եւ ի պատահումն (συμβεβηκός)։ Ոչ որպէս գոյացութիւնն պարզ տեսակ (ἁπλᾶ τὸ εἶδος) այսպէս եւ պատահումն, այլ բազմայեղանակ (πολύτροπον) ելով կարգաւորապէս՝ ըստ ի նմա բնաւորեցոց սեռիցն (κατὰ τὰ ἐν αὐτῷ πεφυκότα γένη) առնէ զբաժանումն. յորոց լինին ինունք, այլ ի միակ գոյացութիւն։ Իսկ ամենեցուն բաղադրեցոց, տասներրեակն կատարի թիւ. ուստի եւ զմակագրութիւն՝ որպէս ասացաք՝ առաջակացեալս մեզ ընկալաւ իրողութիւն։„

“Գիտելի է զոր ասէ եթէ՝ ոչ ըստ միում շարամանութեան ասացեալքն իւրաքանչիւրոք կամ նշանակ է կամ որակ (τῶν κατὰ μηδεμίαν συμπλοκὴν λεγομένων ἕκαστον ἤτοι οὐσίαν σημαίνει ἢ ποιόν) եւ կամ այլ ինչ ի տասն ստորոգութեանցն, ոչ միայն ձայնի հարկաւոր է պարզս խնդրել՝ այլ եւ ըստ իմացման։ Քանզի թէ լոկ ձայնիցն հետեւեսցուք, ոչ եւս ստուգապէս ծանիցուք զյեղանակ ստացմանն, իբր

* Թ. 96, Թղ. 11b—12a: Հեղինակն այս մասն անգլիերէն թարգմանութեամբ դրած է:

ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

թէ որպէս պարզ ձայն է՝ ընթանամ, իսկ իմացումն բաղադրեալ. քանզի պարառուցէ յինքեան զգերանունն, իբր թէ՝ Ես. քանզի ոչինչ զանազանէ ասել՝ ընթանամ կամ Ես ընթանամ։ Սոյնպէս եթէ ոք կարծիցէ զԵրաժէկըն մի ինչ նշանակեն՝ պարզի եղյ ձայնի, այլ ոչ ճշմարտապէս մի ինչ (ἕν τι) նշանակէ։ Քանզի եթէ զինչ Երաժէկըն (էջէ)՝ խնդրեսցէ, երկու՝ այլ ոչ մի գոյցէ։ Քանզի Երաժէկըն՝ մարդ, ապայ ուրեմն՝ ի մարդոյն եւ յարուեստէն Երաժէկըն բաղկացաւ. յայտ է թէ երկու՝ այլ ոչ մի իմն՝ Երաժէկըն։ Իսկ եթէ ոք կամիցի ասել՝ “Ինքն իմաստասէրն էառ այսպիսի տարացոյց.„ գիտասցէ՝ զի ոչ իսկապէս (κυρίως) առ տարացոյցս ինքն զարի (°). այլ գիրա.. ուր միայն գոյ որք ուսանին. զայսպէս առադր բառս (°) յիշեաց ստորասութեան եւ բացասութեան, միանգամայն ծանուցեալ մեզ կամեցեալ անցանել յաղագս Նախադասութեան. քանզի հարկ է զամենայն ստորասութիւն եւ բացասութիւն տրամաբանական գոլ նախադասութիւն. իսկ զնախադասութիւն՝ ճշմարիտ գոլ կամ սուտ։ Ապա ուրեմն ստորասութիւն եւ կամ բացասութիւն կամ ճշմարտեսցեն եւ կամ ստեսցեն որպէս եւ ինքն ասաց։„

Այս շատ պարզ Մեկնութիւնը չենք կրնար գտնել սոյն կտորիս այն մեկնաբան լուսաբանութեանց մէջ, որ Արիստոտէլի Պէրլինի Հրատարակութեան մէջ գրուած են (Հտր. Դ.), որոնց մէջ գրուած են նաեւ Դաւթի յունարէն մեկնութեանց ալ կտորներ։

Վերջապէս դնենք օրինակ մ'ալ Հայերէն Մեկնութենէս, որ կը բացատրէ Յաղագս Մեկ-

*նութեան գրոց* 16 a,1, 2 *նախաբանական կտորն. եւ է այսպէս:*

* “*Ճառեցաւ մեզ երբեմն, եթէ է ամենայն բանական իրողութեանս այսորիկ ակնկալութիւն առ ապացուցական շարաբանութիւնսն հասանել: Այլ վասն զի բազում պատրանք ըն շարաբանութիւնսն լինի, հարկաւոր է զիւրաքանչիւրոք նոցա գիտել: Քանզի ի ձեռն այլոցն գիտութեան լինի գիւտ ապացուցական շարաբանութեանցն. այլ եւ ոչ զիւրաքանչիւրոք յասացելոց շարաբանութեանցն հարկաւոր է գիտել, եթէ ոչ նախ ուսցուք, զինչ իսկ է շարաբանութիւն: Այլ եւ ոչ զնոյն ինքն շարաբանութիւն՝ առանց նախադասութեանց կամ առարկութեանց, թէ տասցես. Այլ եւ նախադասութիւն կամ ստորասական* (καταφατικός) *է, կամ բացասական* (ἀποφατικός) *կամ է բան ոմն* (λόγος τις).

*Վայելուչ էր նախ ուսուցանել յաղագս բանի* (λόγος) *եւ մասանց նորա, իսկ յետ այսորիկ փոխել առ վարդապետութիւն* (διδασκαλία) *նախադասութեանցն, զոր եւ ինքն առնէ ՚ն այսմ իրողութեան. քանզի սահմանելով՝ զինչ անունն, զինչ բայ եւ բան* (τί ὄνομα, τί ῥῆμα καὶ λόγος), *փոխի առ վարդապետութիւն ստորասութեան* (κατάφασις) *եւ բացասութեան* (ἀπόφασις) *եւ բացերեւական բանի* (ἀποφαντικὸς λόγος) *յորոց նախադասութիւնքն բաղկանան:*„

“*Բայց զինչ արդեօք ՚նըսկզբանս ճառեալս կամիցի. քանզի ասէ. Նախ արժան է դնել* (πρῶτον δεῖ θέσθαι.) *Նախ* (πρῶτον) *գիտեմք, զի ըստ երկուս ասի յեղանակս. կամ առ ոմն, իբր այն եթէ՝ “Նախ վերծանելի է զքերթածն* (եւ) *յետ այսորիկ զիմացմունսն խնդրել.„ եւ կամ առ յոլովս, իբր ասասցեն՝ “Նախ քան զամենայն ստանալի է զՀոմերոսի քերթածն, իսկ յետ այսորիկ զայլսն զամենայն որ հետեւանան,„ զոր եւ ՚ն այսմ տեղւոջ ասելով՝ “Նախ.„ իբր այն թէ՝ “Նախ քան զամենայն:„ “Արժան է„*

---

* *Դրինք ըստ տպագրութեան Վենետիկոյ. (տպ. 1833) էջ 487–489: Հեղինակն անգղիական թարգմանութեամբ դրած է:* *ԺԱՆ. ԹԱՐԳՄ:*

(δεῖ), իբր թէ՝ "վայել է" (πρέπει.) իսկ "վայելելն" երկակի առի, կամ ըստ հարկաւորին (κατὰ τὸ ἀναγκαίον), կամ ըստ պիտանացուին (κατὰ τὸ χρήσιμον). այլ եւ զըստ հարկաւորին գոլ զվայելէն, իբր այն եթէ՝ "հարկաւոր է:" իսկ "դնելդ" (θέσθαι) եռակի դարձեալ. կամ իբր ի տեղւոջ, որպէս ըն մարդում, կամ ներ աստում, կամ իբր անուանակոչել. քանզի դրութիւն (θέσις) առի եւ անուանակոչութիւն (? ὀνοματόκλησις) եւ կամ սահմանել, զոր յաւէտ հնագոյնքն "դնել" սովորեցան ասել, զոր եւ 'ն այսմ տեղւոջ իմաստասէրս ասէ "դնել" իբր՝ սահմանել: Արդ ժողովեալ զամենայն, տեսցուք՝ զի՞նչ մեզ ի մեկնութեանս եղեւ. եւ ասասցուք փոխանակ այնորիկ եթէ՝ "Նախ արժան է դնել՝" յայտնի բանիւք այսպէս. "Նախ քան զամենայն հարկաւոր է սահմանել՝ զինչ անուն եւ զինչ բայ եւ կամ զինչ իւրաքանչիւրոք յայլոցն:" Քանզի գիտութիւն այսց ամենեցունց ի ձեռն սահմանին գիւրագիւտ մեզ արասցէ զնախադասութեանցն խընդիրս:"

"Բայց է՞ր արդեօք 'ն այս տեղւոջ այլազգ կարգեաց, իսկ այլազգ յետոյ առնէ սոցա վարդապետութիւն. մի գուցէ՝ ոչ ըստ կարգաւորութեանն 'ն այսմ տեղւոջ նախ քան զբան (λόγος) զբացերեւութիւն (ἀπόφανσις) եւ զստորասութիւն (κατάφασις) եւ զբացասութիւն (ἀπόφασις) կարգեաց: Այլ վասն զի անգէտ մեզ եւս խառնակոչութիւն սոցա, յաղագս այսորիկ ի մէջն վարեալ՝ յընդելից եւ ի սովոր մեզ անուանց, որ է բանի եւ անուան եւ բայի, կամեցաւ գիտութեամբ ծայրիցն յայտնել զանդիտութիւն միջոցին: Եւ զի ոչ կարգ ունի՝ քաջայայտ է. զի եւ զբացասութիւն նախ քան զստորասութիւն կարգեաց, որպէս զի մի կարծեսցուք ըստ կարգաւորութեան (κατὰ τάξιν) ինչ ստանոր առնել, այլ պիտոյից միայն սակս:"

"Իսկ եթէ ոք կամիցի ասել՝ ընդէ՞ր միայն անուան եւ բայի արար յիշողութիւն տակաւին եղոյ, եւ ոչ այլոց մասանցն բանի: Ասելի է եթէ՝ վասն զի միայն իսկապէս մասունք բանի՝ անուն եւ բայ, իսկ այլոցն՝ որք սովորեցան առ մանկագոյնս ասիլ, ոմանք են՝ որ ընդ անուամբ, իսկ այլք՝ ընդ բայիւ անկանին: Ընդ անուամբ՝ իբր

> թէ դերանուանութիւն, եւ կամ՝ մակբայ, որպէս խնդրեալ որ գտցէ զնւրաքանչիւրն սոցա: Իսկ ընդունելութիւն ընդ բայիւ. իսկ այլոցն ամենեցունց՝ այլ իմն պիտոյից սակս առեալ լինին: Որպէս ի նաւի առ այլ իմն պէտս առնանին առ ի մածուցանել՝ իբր եւ սինձն եւ վուշ, եւ առ ի զօդան պնդել՝ բեւեռք, եւ կամ առ ի գեղեցկութիւն՝ կարմրադեղն. եւ ոչ մի ոք ի սոցանէ մասն ոչ առի նաւին, այլ պիտոյից սակս վերաբերին առ ի նաւն: Այնպէս եւ բանի, ոմանք են՝ որ յարել եւ պնդել զմասունս բանի, որպէս շաղկապն, եւ ոմանք են՝ որ ի լրութիւն, որպէս նախդիրն. ոչ իբր ըն կատարել, այլ իբր գեղեցկացուցանելով եւ պայծառացուցանելով, եւ այլքն զիւրաքանչիւր պէտսն առ բանն ունելով ոչ եւս մասունք ասասցին:„

Այս մեկնաբանութեանս սկիզբը կը նմանի Յովհանէս Իտալոսի (J. Italus) մեկնութեան, զոր կը գտնենք Արիստոտէլի Պէրլինի Հրատարակութեան մէջ (Հտր. Դ. 24b, 30 եւն:) Իսկ “դնել„ (ϑέσϑαι) ասութեան հետաղօտութիւնը նման կը հնչէ Ամմոնիոսի շատ ճարտարարուեստ մեկնաբանութեան մէջ, որ տպուած է Արիստոտէլի Պէրլինի Հրատարակութեան մէջ (Դ, 98a, 24 ff.) Մեկնութեան այն մասն՝ թէ ինչու Արիստոտէլ “ստորասութիւն„, “բացասութիւն„ եւն յառաջ կը դնէ, նման կը հնչէ՝ բայց չէ բոլորովին նոյն՝ սոյն այս տեղւոյ Սիւրիանոսի տուած մեկնութեան հետ. վասն զի Արիստոտելի Պէրլինեան Հրատարակութեան մէջ կը կարդանք ի ծանօթութեան (Հտր. Դ. 99b) այսպէս. Boeth. II, p. 287. Իսկ Սիւրիանոս, որուն մականունն է Փիլոքսենիոս, այս տեղ խնդիր կ'ընէ թէ ինչու յառաջ դնելով նախ բացասութեան վրայ կը խօսի եւ յետոյ ստորասութեան:„ Որչափ որ

Boethiusի տուած տեղեկութիւններէն կրնանք գատել, Սիւրիանոս բոլորովին ուրիշ եւ խորին պատճառներ կը դնէ առ այս քան թէ այն՝ զոր Հայ մեկնիչս կու տայ: Նաեւ Հայերէն մեկնութեանս չեն յարմարիր այն Սիւրիանոսի կորսուած մեկնութեան նկատմամբ ուրիշ տեղեկութիւնքն, զոր կու տայ Boethius "Յաղագս Մեկնութեան„ գրոց վրայ եղած Մեկնութեան մէջ:

§ 14. Եթէ Հայերէն մեկնութիւնս Դաւթի չէ, — եւ այս ստոյգ է, — շատ մ'այլ յարակից խնդիրներ կ'ելլեն ասոր նկատմամբ: Թարգմանութի՞ւն մըն է ընդհանրապէս, եւ չէ՞ արդեօք Հայերէն մեկնութիւն որ Արիստոտէլի կանխաւ գոյութիւն ունեցող թարգմանութեան մը վրայ յօրինուած է: Եւ եթէ թարգմանութիւն է յունարէն որեւիցէ մեկնութեան մը, արդեօք բուն իսկ բնագրին թարգմանութեա՞ն հետ ի միասին թէ յետոյ եւ կամ թէ աւելի յառաջ թարգմանուած է*:

* Յիշենք որ մեր Մատեն. Թ. 96 ընտիր բոլորգիր ձեռագիրը Ստորոգութեանց դիմաց ունի նաեւ մեկնութիւնն սոյն վերնագրոյ տակ. "Լուծմունք ի ամէչա-Խոյսի ասացեալ„ (ծանօթ է որ Պրոկղի գրքին ալ մեկնութիւն մը կայ "Յամելախօսի„ անուամբ:) Ասա կու գայ երրորդ սխլն մ'ուր լուսանցագրութեան նման մեկնութեանց կտորներ կան գրուած: Այս վերջիններէն շատերը "Դաւթի Անյաղթի„ անուամբ մեկնութեանց հետ կը նոյնանան. (տես վերը § 13 յառաջ բերուածները,) իսկ ասոնց դիմացն "Յամելախօսի„ բաժնին մեկնութիւնք բոլորովին ուրիշ են: Ուրիշ տեղ ալ "Դաւթի„ կտորները կը գտնուին "Յամելախօսի„ մեկնութեան մէջ. (տես վերը՝ § 13, էջ 23—24:) ծԱՆ. ԹԱՐԳՄ:

Ապահով կ'երեւայ թէ մեր ունեցածն յունարէնէ թարգմանուած է, եւ այս առնուազն երկու պատճառաւ: Նախ ոճն յայտնապէս յունարէնէ թարգմանութիւն մը կը ցուցընէ: Երկրորդ՝ ասոր մէջ կը գտնենք ակնարկութիւններ Արիստոտէլի ուրիշ գրութեանց, որոնք յոյն մատենագրին մատչելի էին, բայց հաւանականօրէն անմատչելի էին — վասն զի անոնք հայերէն թարգմանուած չեն երբեք, — հայ մատենագրի, որ իւր մայրենի լեզուաւ կը գրէ մեկնութիւն մը: Հոս կը դնեմ քանի մ'օրինակ այսպիսի ակնարկութեանց: Մեկնութեանս 16a 3—9 տեղւոյն վրայ գրուած հատածին մէջ, ուր կը մեկնուի այս խօսքը՝ "քանզի այլոյ իրի է„ (ἄλλης γὰρ πραγματείας), կը կարդանք հետեւեալը:

* "Իւ եւս դարձեալ՝ ասացեալ յաղագս նշանակացն, որ է իրացն արդեօք կամ իմացմանն կամ ձայնի, դարձեալ ի սկիզբն ընթանալ՝ եթէ որոց այսոցիկ նշանակք առաջնոցն, կիրք անձինն նոյն ինքն. իբր այն եթէ՝ որ միանգամ նոյնպէս իմացաւ, եւ որ ունին զիմացմունսն՝ հասարակապէս ըստ նմին օրինակի զնախագաղափարին ընդունին տիպ, որ են կիրք. անդրէն հակադարձեալ զբանդ, եւ որ միանգամ զնոյն տիպս ունելով եւ իմացմունս, նոյնք են նախագաղափար առ ամենեսեան, որ են իրք: Ապա ուրեմն իմացմունքն եւ իրքն, որ կարեն գոլ նոյն առ ամենեսեան, բնութեամբ այսոքիկ ասացին: Իսկ ձայնքն եւ գրեցեալքն անկար առ ամենեսեան գոլ նոյնք. յաղագս այսորիկ եղանիլ յետոյ: Իւ

---

* Դրինք ըստ Վենետիկոյ տպագրութեան (տպ. 1833) էջ 490—91: Հեղինակը հոս յունարէնի դարձուցած է հայերէնը: ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

զի ոչ այսր տեղւոյ յաղագս իմացման խնդիր, հարկեցաւ դուզնաքեայ առնուլ առ ի պիտանացուն իւր: Իսկ զկատարելագոյն վարդապետութիւնն, եթէ ճըր արդեօք նմանութիւնք իմացմունք իցեն, չերրորդ գիրն՝ յորժամ յաղագս անձին ասասցէ, անդ ճառեսցէ: Քանզի բնական իմաստասիրութեան, որպէս ճեմականք, կամ աստուածաբանական, որպէս պղատոնականք, այլ ոչ այսորիկ իրողութեան՝ այսպիսի տեսութիւնս:„

Դարձեալ կը գտնենք կտոր մ'ալ 16a, 14—18 կտորին մեկնութենէն, ուր կը կարդանք.

* “Արդ վասն զի խնդիր իւր էր յաղագս ճշմարտութեան կամ ստութեան մասանց բանին, եթէ՝ որպէս իմացմունքս, այսպէս եւ ձայնքս ունին. ոչ միայն յայսմ տեղւոջ զայս, այլ եւ ըն յետոյս բնականաց (μετὰ τὰ φυσικὰ) ասէ այսպէս, թէ՝ ճշմարտութիւն եւ ստութիւն զսկիզբն յիմացուածոցն առնու, յետ այսորիկ եւ ի ձայնս երեւի: Քանզի զիրան անհնար է դեդեւիլ առ որ եւ իցեն սոքա, քանզի յամենայն ժամ զմինն ունիցի անշարժապէս կազմեալ իւր զայս. զի ճշմարտելն եւ ստելն՝ ըն բաղադրեալսն լինի, այլ ոչ ի պարզ ձայնս: Յետ այսորիկ փոխի ի վարդապետութիւն անուան եւ բայի, եւ այլոցն ամենեցուն՝ որոց միանգամ յիշումն արար:„

Այսպէս նաեւ 17a, 15 կտորին վրայ գրուած մեկնութեան մէջ** կը յիշուի թէ Պղատոն այն կարծիքն ունէր թէ խօսքն ի մեզ բնութեամբ (φύσει) է, վասն զի բնական զօրու-

* Դրինք ըստ տպագրութեան Վենետկոյ (տպ. 1833) էջ 494—5: Հեղինակը յունարէն թարգմանութեամբ դրած է հատածս: ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

** Տես տպ. Վենետ. 1833, էջ 507—509: ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

*թեան գործին է. եւ յառաջ կը բերուի Արիստոտէլի ապացուցութիւնն իբրեւ ուղղուած ընդդէմ Պղատոնի: Կրնան յիշուիլ նաեւ ուրիշ տեղեր, որոնց մէջ Արիստոտէլի միւս գործքերն ի մէջ կը բերուին այնպիսի եղանակաւ, որ կը ցուցընեն թէ մեկնիչս էր Յոյն մ՚որուն մերձենալի էին անոնք, եւ ոչ Հայազգի յարասող մեկնաբան* (paraphraste) *մը՝ բնագրին արդէն գոյութիւն ունեցող թարգմանութեան:*

§ 15. *Բայց եթէ այս վերջին կարծիքս կը մերժուի, ի՞նչպէս մեկնելու է՝ նախ մեկնութեանս մէջ ի մէջ բերուած բնագրին վկայութեանց ձեւոց այն ընդհանուր նմանութիւնը բուն բնագրին հետ: Օրինակի համար* 16a, 3—9 *կտորին մեկնութեան մէջ, զոր վերն ի մէջ բերինք, սա անսովոր ապացուածքն՝ "որոց այսոցիկ նշանակք առաջնոյն"* (ὧν τούτων σημεῖα πρώτων) *ճիշդ նոյնութեամբ առնուած է բուն բնագրէն: Երկրորդ՝ ի՞նչպէս մեկնելու է որ ուրիշ մեկնչաց ամենեւին յիշատակութիւն չկայ ասոր մէջ, մինչդեռ Ե դարու այլ մեկնութեանց մէջ շատ յաճախ են այսպիսի ակնարկութիւնք՝ ըլլան խաղաղական կամ վիճական: Առաջին պարագայն միայն այսպէս կրնանք մեկնել որ ենթադրենք թէ բնագիրն ու մեկնութիւնն ի մասին միեւնոյն ժամանակ եւ միեւնոյն ձեռքէ թարգմանուեցան յունական սկզբնագրէ, որուն մէջ բնագիրն ու մեկնութիւնը քովէ քով կը շարունակուէին: Դիպուածական դոյզն տարբերութիւնք կոչմանց՝ որ հայերէնին մէջ կը գտնուին, կրնան նոյնպէս*

գտնուած ըլլալ յունարէնին մէջ։ Օրինակի համար 10a, 25 տեղւոյ* խօսքը՝ «Թերեւս եւ այլ ինչ երեւեսցի յեղանակ որակութեան» (= καὶ ἄλλος ἄν τις φανείη τρόπος ποιότητος) կից մեկնութեան մէջ ի վկայութիւն բերուած է այսպէս՝ «Թերեւս եւ այլ երեւեսցի տեսակ որակութեան» (= καὶ ἄλλο ἂν φανείη εἶδος ποιότητος.) Այս տեղ կրնայ ըլլալ որ յոյն բնագիրն պարզապէս ազատ կոչում մ'ըրած ըլլար։ Այսպիսի դէպքեր կրնան յանչափս շատցուիլ։

Միայն տեղ մը հանդիպեցաւ ինձ մեկնութեան մէջ, որ այնպէս կ'երեւայ թէ յունարէնէ թարգմանութիւն մը չի կրնար ըլլալ. այս դէպքիս մէջ պէտք ենք ենթադրել որ հայ թարգմանիչը պարզ յաւելուած մ'ըրած է։ Այս տեղն է մեկնութիւն 10b, 5—9 կտորին, եւ է այսպէս.

** «Իսկ երկրորդ՝ զի թէպէտ եւ անուն կայցէ որակութեան (ποιότης) եւ ունի կցորդութիւն եւ որակն (ποιός) իւրացն, այլ սակայն անուանն ոչ ունելով կցորդութիւն՝ ոչ յարանուանաբար (παρωνύμως) ասի ի յառաջակացելոյ որակութենէն, որպէս յառաքինութենէն (= ἀρετή) քաջն (= σπουδαῖος) ասիլ. քանզի ըստ ելլենական ձայնին՝ «առաքինութիւն» որակութիւն իմն է. իսկ որ ի սմանէ որակն ասացեալ՝ ոչ «առաքինի», այլ «քաջ» մանաւանդ եթէ ճշմարտապէս խնդրեսցես՝ «փոյթ» (σπουδαῖος) ասեն զայնպիսին։[1] Արդ

* Տես տպ. Վենետ. 1833, էջ 391, 6. 413, 30 եւ 414, 28: ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

** Դրինք ըստ տպագր. Վենետ. 1833, էջ 415 22—36: ԾԱՆ. ԹԱՐԳՄ:

[1] Վասն զի «քաջ» կը նշանակէ աւելի «արի, արիասիրտ», քան թէ բարոյական մտօք «առաքինի», եւ «փոյթ» աւելի կը համապատասխանէ յունարէն σπουδαῖος

> ըստ Յունաց ձայնի ոչ "փութութիւն" (σπουδή) անուանն նախադաղափարն առի, իբրու թէ ի "փութութենէն", "զփոյթն" առիլ, եւ ոչ "առաքինութեան" կացելոյ որակութեանն՝ յարանունաբար որակն ի սմանէ առին, իբր եթէ ասիցես՝ "առաքինի." այլ այլ իմն ձայն որակութեան է, որ է՝ "առաքինութիւն." իսկ այլ ձայն որակին, որ է՝ "փոյթն:"

Չե՞նք կրնար այս կտորը մեկնել իբր յաւելուած թարգմանչին՝ բնագրին մէկ կտորը մեկնելու, որ այլազգ մթին պիտի մնար իւր հայրենակցաց:

§ 16. Միւս խնդիրն այն էր որ ուրիշ մեկնութեանց ամենեւին ակնարկութիւն չկայ աստ մէջ: Կրնա՞նք արդեօք մեկնել զայս՝ ենթադրելով թէ շատ հին է այս Մեկնութիւնս: Կարելի՞ չէ որ անոր համար ուրիշ մեկնչաց անուանք չեն գտնուիր աստ մէջ, վասն զի այն մեկնիչք դեռ եւ ոչ գրած էին: Սակայն անհնար է այսպէս մեկնել. եւ եթէ ընդհանրապէս կարեւորութիւն տալու է այն պարագային՝ որ այսպիսի յիշատակութիւնք չկան գրութեանս մէջ, պէտք է աւելի զայս նշան առնուլ այն բանին թէ Մեկնութեանս հեղինակն բնագիրը կը լուսաբանէ աշակերտաց, որոնց ուրիշ մեծանուն ուսուցիչք՝ ինչպէս Աղեքսանդր, Թեմիստիոս, Մաքսիմոս, Կալլիմաքոս, Ողիմպիոդորոս, անծանօթ էին, որոնք ընդհակառակն շատ անգամ կը յիշուին Դաւթի թարգմանած Ներածութեան եւ Սահմանաց մեկնութեան, ինչպէս նաեւ Վեր-

(ժիր, գործունեայ, փութաջան եւն.) բառին, վասն զի կը նշանակէ՝ "ժրաջան, փութաջան, հոգածու:"

լուծութեանց հատակատոր մեկնութեան մէջ: Այսպիսի աշակերտաց համար կրնային մէկդի թողուած ըլլալ սոյն կարգի գիտնական յիշատակութիւններ: Թերեւս ուրեմն այս պարագայն նշան մըն է թէ այս Մեկնութիւնն սկզբնաբար բնիկ հայազգի ուսանողաց ուսման համար շարադրուած է:

§ 17. Բայց եթէ այս այսպէս է, ինչո՞ւ նախ յունարէն գրուած ըլլալու էր: Թերեւս ամէն դժուարութիւնք կը բարձուին, եթէ ընդունինք որ հայազգի ուսուցիչ մ'որ կ'ապրէր Աթէնք կամ Անտիոք կամ Կեսարիա եւ հմուտ էր Արիստոտէլի միւս գրութեանց եւ ընդհանրապէս յունական փիլիսոփայութեան, թարգմանած է Արիստոտէլի բնագիրն եւ նոյն ժամանակ այս մեկնութիւնը գրած իւր հայրենակցաց գործածութեան համար, որոնք իրեն պէս նոյն հմտութիւնը չունէին: Այս պարագայիս մէջ Մեկնութեանս՝ թարգմանութեան շատ նմանող հայերէն լեզուի ոճը կրնանք մեկնել այնու որ յունարէնով տոգորուած հայ մ'այսպէս անշուշտ կը գրէր: Կրնար նաեւ նախ յունարէն գրած ըլլալ եւ յետոյ իւր իսկ գրած յունարէնը թարգմանել հայերէնի:

§ 18. Չեմ կրնար համոզուիլ որ այսպիսի տեսութիւն մ'ուղիղ չըլլայ: Գիտենք օրինակի համար որ Պրոյերեսիոս հռետորն, ուսուցիչն Յուլիանու, Բարսղի եւ Գրիգորի Նազիանզացւոյ, հայազգի մըն էր Պարսից սահմանակից տեղերէն. դարձեալ որ երբ ինքն ուսուցիչ էր Ա-

*թէնքի մէջ, “ամենայն պոնտոս եւ ազգք որ շուրջ զնովաւ, առաքէին առ նա զաշակերտս իւրեանց, հիացեալ ընդ նա՝ իբրեւ ընդ սեպհական զարդ իւրեանց աշխարհին (ὥσπερ οἰκεῖον ἀγαθόν)[1]: Իրեն շատ աւելի ապահովութեամբ քան ուրիշ մէկու մը կրնանք տալ Արիստոտէլի գործոց թարգմանութիւնքն հանդերձ մեկնութեամբ: Այս ենթադրութիւնս լաւ կը յարմարի այն հին աւանդութեան հետ, զոր յիշեցի, այսինքն՝ որ Դաւիթ Անյաղթ աւելի երիցագոյն եւ իբրեւ ուսուցիչ գլխաւոր էր Բարսղի եւ Գրիգորի Նազիանզացւոց վրայ: Արդեօք հայկական աւանդութիւնը շփոթած չէ՞ զՊրոյերեսիոս — որուն հայկական անունն անծանօթ է, — եւ որ արդեամբք այն համբաւաւոր անձանց ուսուցիչն էր, Դաւթի՝ Սահմանաց եւ Ներածութեան մեկնութեան հեղինակին հետ, որ գրեթէ դար մ'ետքն ապրած է:*

*§ 19. Նշանակութիւն չի կրնար տրուիլ այն պարագային որ Արիստոտէլի գրոց այս մեկնութեան մէջ ամենեւին հետքեր չենք գտներ որ քրիստոնէական մատենագրի մը նշան ըլլան: Ո՛չ Դաւթի Ներածութեան վրայ գրած մեկնութեան եւ ո՛չ իւր Սահմանաց մէջ կը գտնենք այսպիսի բան: Բայց այսպիսի հետքերու պակսիլն իւր յատուկ նշանակութիւնն ունի: Կ'երեւայ թերեւս որ այս ամէն հայկական մեկնութիւնքն ու թարգմանութիւնք թարգմանչաց դպրոցի մը*

---

[1] Տես Եւնապիոս, վարք Պրոյերեսիոսի:

գործքն են, որ բոլորովին զատուած եւ գուցէ ալ հակառակորդ էր Ս. Մեսրոպայ եւ Սահակայ հիմնած դպրոցին: Թէ ինչպէս այս վերջին դպրոցն արտաքին մատենից հետ կը վարուէր զանոնք հայերէն թարգմանելու ժամանակ, կը տեսնենք Մովսիսի Խորենացւոյ Ափթոնիոսի Ճարտար խօսութեան թարգմանութեան մէջ: Այս վերջին թարգմանութեան մէջ բոլոր օրինակներն առնուած են Ս. Գրքէն, եւ բոլոր այն տեղերն՝ որ հեթանոսական դիցաբանութեան ակնարկութիւններ էին, խնամով դուրս թողուած են:

§ 20. Այժմ ամփոփենք մեր այլեւայլ կէտերու նկատմամբ ըսածները:

1. Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց վրայ եղած մեկնութիւնք Դաւթի Անյաղթի չեն: Եւ ապացոյց առ այս գիտենք որ՝ ա). Այս գրութեան հետ ամենեւին նոյնութիւն չունի այն յունարէն մեկնութիւնն որ ἀπὸ φωνῆς Δαβίδ (ի ձայնէ Դաւթի) կը կոչուի: բ) Հայերէն 580ի գրուած գրքի մը մէջ Սահմանք Իմաստասիրութեան (Prolegomena Philosophiae) Դաւթի Անյաղթի կը տրուի, բայց Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց վրայ խօսող գրութիւնքը՝ ոչ: Նոյնպիսի ապացոյց կ՚ընծայեն Ստեփանոս Սիւնեցի՝ Ը դարուն առաջին կիսուն եւ Գրիգոր Մագիստրոս՝ ԺԱ դարուն առաջին կիսուն: գ) Փարիզի ձեռագիրն՝ որ այսպիսի խնդիր մ՚որոշելու առաջին ճոխութիւնն է, չի յիշեր զԴաւիթ: Գրքին վերջը առաջին ձեռքէ գրուած վերջաբանութիւնն ալ սոյն արդիւնքն ունի. “Իմաստութիւն հաւր եւ բան, սիրողին իմաստութեան, վարդապետին Սարկաւագ կոչեցեալ աշխատանաց յուղղութիւն տառիս. զարժանն հատոյ յանյաչաղ ձրիցդ:„ Այս կտորն եւ այնպէս կը հասկընամ թէ Սարկաւագ կոչեցեալ վարդապետն օրինակողն էր Փարիզի ձեռագրին եւ ոչ թէ հեղինակ Մեկնութեան:

2. Թէ Մեկնութիւնը թարգմանուած է բնագրին հետ, ոչ յառաջ եւ ոչ յետոյ: Վասն զի եթէ թարգմանութիւն չէ այս ընդհանրապէս, այն ատեն յօրինուած էր նոյն իսկ բնագրին թարգմանչէն, եւ անոր հետ միասին կը շարունակուէր ի սկըզբանէ:

Այս բանս գրեթէ ստոյգ է. վասն զի ա) Ամէն ձեռագիրք՝ Փաւիային ալ ի միասին առեալ՝ բնագիրն ու մեկնութիւնը կը դնեն փոխն ի փոխ կարգաւ: բ) Երկուքին ոճն ու բացատրութեան կերպն այնպէս սերտ կապուած են իրարու, որ զատ զատ գրուած ըլլալ դժուար է:

3. Ժամանակին գալով՝ կարելի չէ որոշութեամբ հաստատել: ա) Վարդանայ յիշատակութիւնն իբրեւ քաջ մարդու օրինակ՝ մատնանիշ կ'ընէ Ե դարու վերջին կէսը: Եթէ աւելի հնագոյն ժամանակ մ'ընդունինք, պէտք ենք այս յիշատակութիւնը յետագայ փոփոխութիւն մը նկատել, զոր հայրենասէր հայ մ'ըրած ըլլայ: բ) Ամէնէն զօրաւոր ապացոյցն է թարգմանութեանս մէջ ցոլացած Արիստոտելի բնագիրը: Այս բնագիրն՝ ի մասնաւորի Յաղագս Մեկնութեան գրոց մէջ՝ ուր կրնանք փորձել զայն, սերտ յարաբերութիւն ունի այն բնագրին հետ, զոր Բոյեթիոս (Boethius) գործածած է: Համեմատելու է օրինակի համար հետեւեալ տեղերու ընթերցուածքն. 16a, 6 (= տպ. Վենետ. էջ 461, 14.) 16a, 25 (= 462, 22.) 17a, 11 (= 465, 13.) 17a, 30 (= 466, 8.) 17b, 7, 8 (= 467, 1.) 17b, 14 (= 467, 8.) 18a, 8 (= 468, 18.) 18a, 35 (= 469, 19.) 18b, 25 (= 470, 25 26.) 18b 33 (= 471, 1.) 18b, 39 (= 471, 9.) 19a, 4 (= 471, 17.) 19a, 20 (= 471, 33.) 19b, 12 (= 473, 10, 11.) 19b, 15 (= 473, 15.) 19b, 25 (= 473, 25.) 20a, 31 (= 475, 24.) 20b, 36 (= 477, 11.) 21a, 18 (= 478, 7.) 21a, 22 (= 478, 12.) 21b, 18 (= 479, 20.) 21b, 21 (= 479, 24.) 23a, 11 (= 483, 15.) 23a, 21 (= 483, 28.) 23a, 25 (= 483, 33.) 23a, 31 (= 484, 7.) 23b, 21 (= 485, 15.) 24a, 6 (= 486, 21.) 24a, 8 (= 486, 23.) Բոյեթիոսի Ճշգրտագոյն բնագրին հրատարակիչը՝ Կարոլոս Մայսթէր (Karl Meister) միտ դնել կու տայ Ֆլէքայզէնի Տարեգրոց մէջ (Fleckeisen's Jahrbücher, vol. 117)

Բոյեթիոսի բնագրին քանի մը յատկանիշ տեղերուն, որոնց կը վկայէ նաեւ հայերէնը: Ուստի այլ եւս տարակոյս չկայ որ հայերէն թարգմանութիւնն՝ Արիստոտէլի այնպիսի յոյն բնագիր մը կը ներկայացնէ որ առնուազն Ե դարու հնութիւն ունի: Պէտք է միտ դնել նոյնպէս որ Ստորոգութեանց արաբերէն թարգմանութիւնն ալ, զոր Ցէնքէր (J. Th. Zenker) հրատարակած է ի Լայփցիկ 1846ին, հայերէնին հետ շատ մը նմանութիւններ ունի: Ցէնքէր իւրաքանչիւր էջի ներքեւ նշանակած է արաբերէնի ներկայացուցած տարբեր ընթերցուածքներ, որոնցմէ յաջորդք հայերէնի մէջ ալ կը գտնենք. 2a, 5 (= 362, 15) “կամ բացասութեան„ յաւելումն. 2a, 38 (= 364, 4) կը պակսի κατηγορηθήσεται τὸ ζῷον խօսքը. 3a, 20 (= 366, 17) պակաս է ὡσαύτως. 3b, 26 (= 368, 21) պակաս γάρ. 3b, 29 (= 368, 23) պակաս ἢ τριπήχει. 3b, 35 (= 369, 4) պակաս καὶ ἧττον. 4b, 13 (= 371, 3) պակաս πάθους. 5b, 8 (= 375, 13) “այսքանապէս.„ (καθ' αὑτὰ πόσα.) 6a, 22 (= 377, 15) “հինգ քան երեք ասին„ (πέντε ἢ τρία λέγεται.) 8b, 28 (= 386, 8) “տեւողագոյն եւ յոգնամնականագոյնն գոլ„ (μονιμώτερον εἶναι καὶ πολυχρονιώτερον.) 9a, 30 (= 388, 20) պակաս καὶ στρυφνότης. Սակայն այս տարբերութեանց մեծ մասն արդէն Weitzի մէկ կամ աւելի ձեռագրաց մէջ կը տեսնուին:

§ 21. Այժմ անցնինք քննելու թէ այս գործքին մէջ ի մի ամփոփուած թարգմանութիւնք ինչ չափով կը լնուն այն պայմաններուն երկրորդը՝ զորոնք վերը (§ 2) բացատրեցինք. այսինքն՝ այնպէս բառական ըլլալն որ արդեամբք յոյն բնագիրք՝ որոնցմէ թարգմանուած են, ցոլանան ասոնց մէջ: Այս պայմանը շատ կատարեալ եղանակաւ կը լնուն սոյն թարգմանութիւնք: Միայն զարտուղութիւն կը կազմէ Յաղագս աշխարհի գրոց թարգմանութիւնը, եւ այս տեսակ այլայլութեանց մեծ մասն ա-

ղաւաղութիւնք են, ծագած անկէ՝ որ շատ տարածուած էին ասոնք իբրեւ դասագիրք: Բաւական է այս կէտիս նկատմամբ Ադալպերդ Մէրքսի (Adalbert Merx) գրածը բերել ի վկայութիւն: Իրաւ է որ այն խօսքերը գրուած են Դիոնեսիոսի Թրակացւոյ հայերէն թարգմանութեան վրայ, բայց շատ լաւ կ'արժեն հաւասարապէս նաեւ այս թարգմանութեանց համար. եւ ամենեւին բան մը չի մնար յաւելուլ այն մասին վրայ, յորում կը սահմանուի այն մասնաւոր եղանակն՝ որով գործածելու է այս թարգմանութիւնքն: Հոս կը դնեմ կտոր մը այս գրքէն՝ "Դիոնեսիոսի Թրակացւոյ արուեստ քերականութեան„, Լայփցիկ 1883. Մէրքսի ճառ վասն հայերէն թարգմանութեան, էջ 63. (Dionysii Thracis Ars grammatica, edidit Gustavus Vhlig. Lipsiae 1883. Merxii Disputatio De interpretatione Armeniaca p. LXIII.)

"Այժմ մեկնենք թէ ինչ կերպով է վարուած հայը՝ Դիոնեսիոսն թարգմանելու ժամանակ: Թարգմանչին նկարագիրը կարճ կերպով կրնանք նկարագրել, եթէ ըսենք որ ոչ միայն բառերուն, այլ գրեթէ վանկերուն եւ տառերուն անգամ կապուած է. սակայն այս չոր մեկնութեամբս չշատանալով՝ բաւական համարեցանք օրինակ բերելով ցուցընել՝ թէ ինչ ճամբայ բռնած է, զոր եթէ ընթերցողք հետազօտեն՝ լաւ կ'ըմբռնեն թէ ինչ է իւր սովորական կերպն եւ ինչ ճոխութիւն ունի

քննադատութեան համար: Այս վախճանաւ երկու գլուխ յառաջ կը բերենք յունարէն եւ հայերէն՝ աւելցընելով վրան հայերէն իւրաքանչիւր բառի, մանաւանդ թէ նաեւ վանկի մեկնութիւնն այնպիսի եղանակաւ որ՝ ըստ կարելւոյն՝ գիր գրի համապատասխանէ: Այլ լատիներէն մեկնութիւնն՝ զոր հետազօտելու ատեն ընթերցողներէն կը խնդրեմ մոռնալ Կիկերոնը, եթէ մէկն համեմատէ յունարէն բնագրին հետ, չի կրնար չիմանալ որ կարելի է բաւական ճշդութեամբ որոշել, թէ հայն ինչ յունարէն ընթերցուած կը փոխադրէ թարգմանութեամբ:»

Մէրքսի օրինակ բերած քերականութեան գլխուն տեղ կը դնենք հոս էջ մը Ցաղագս Մեկնութեան գրքէն:

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 17a, 8* | Ἔστι | δὲ | εἷς | πρῶτος | λόγος | ἀπο- |
| | Եւ | է, | մի, | առաջին | բան | բաց- |

| | | | |
|---|---|---|---|
| φαντικὸς | κατά-φασις, | εἶτα | ἀπό- |
| երեւական. | ստոր-ասութիւն, | ապա | բաց- |

| | | |
|---|---|---|
| φασις· | οἱ δ' ἄλλαι | πάντες |
| ասութիւն: | իսկ այլքն | ամենեքեան, |

| | | | |
|---|---|---|---|
| συν-δέσμῳ | εἷς· | ἀνάγκη δὲ | πάντα |
| շաղ-կապաւ, | մի: | բայց հարկէ | զամե- |

| | | | |
|---|---|---|---|
| | λόγον | ἀπο-φαντικὸν | ἐκ-ῥήματος |
| նայն | բան | բաց-երեւական | նարտա- |

| | | | | |
|---|---|---|---|---|
| | εἶναι | ἢ | πτώσεως | ῥήμα- |
| բայէ | գոլ, | կամ | տապայմանէ: | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| τος· | καὶ | γὰρ | ὁ-τοῦ-ἀνθρώπου | λόγος, |
| | եւ | քանզի | մարդոյն | բան, |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| ἐὰν | μὴ | τὸ-ἔστιν | ἢ | ἦν | ἢ |
| թէ | ոչ | զ'էն, | | | եւ կամ |

* Տես տպ. Վենետ. էջ 465, 9 եւն:

Ծ. ԹԱՐԳՄ:

| ἔσται | ἢ | ἄλλο | τι | τῶν τοιού- |
|---|---|---|---|---|
| զեղէցին | կամ | այլ | ինչ | զայսպի- |

| των | προστεθῇ, | οὔ-πω | λόγος | ἀπο- |
|---|---|---|---|---|
| սեացն | առ-դիցէ, | չեւ-եւս | բան | բաց- |

φαντικός.
երեւական:

Մէրքս իւր՝ Թրակացւոյ Քերականութենէն բերած օրինակին մէջ աւելցուցած է նաեւ տառ առ տառ լատիներէն թարգմանութիւն մը: Ես զանց ըրի զայս, վասն զի բերուած օրինակին աւելի ազդուութիւն մը չի տար: Վերը դրուած քաղուածոյ օրինակին մէջ, — միտ դրուի որ յունարէնի կարգը պահուած է, — պէտք է ի բաց առնուլ

1. δέ եւ γάρ շաղկապաց թարգմանութիւնը. առաջինը կը թարգմանուի "բայց„ կամ "եւ„ ըստ իմաստին՝ թէ հակառակը նշանակելու զօրութեամբ գործածուա՞ծ է թէ պարզապէս իբր համազօր καὶ (եւ) շաղկապի:

2. Յօդի թարգմանութիւնը: Հայերէնի յօդը կը թարգմանուի Ն մասնիկն յաւելլով:

Այս վերը դրուած թարգմանութեան մէջ յունարէն բնագրին ունեցած տարբերութիւնք առաջին հայեցուածքով ալ կը գտնուին: Այս տարբերութիւնքն են՝ պակաս ըլլալն ῥήματος եւ ἢ ἣν բառերուն, եւ ἄλλο τι τῶν τοιούτων ընթերցումն փոխանակ τι τοιοῦτον ընթերցման:

Մէրքս կը շարունակէ դարձեալ այսպէս՝ յէջն 67.

"Այս է ուրեմն հայկական թարգմա-

նութեան նկարագիրը, յունարէնը վանկ առ վանկ փոխադրելով կը թարգմանէ Հայն, շատ քիչ անգամ միտ դնելով իմաստին, իսկ մասնիկներն՝ որոնցմէ զուրկ էր իւր Հայրենի լեզուն, երբեմն դուրս թողլով եւ երբեմն ազատօրէն փոխադրելով: Ընթերցողները մտադիր կ'ընեմ որ չկարծեն թէ թարգմանչէն հնարուած բառերը լեզուին գործածութեան մէջ առնուած չըլլան. մանաւանդ թէ այնպէս՝ ինչպէս անճաշակ լատինական թարգմանութիւնքն՝ որ γμετοχήν participium, γαἰτιατικήν accusativum, γγενικήν genitivum թարգմանել չամաչեցին, ամէնէն ընդունելի եղան, այսպէս նաեւ Դիոնեսիոսի քերականութեան թարգմանչին յունականաց ձեւին համեմատ յօրինած բառերն յետոյ սովորական գործածելի բառերու կարգն անցան: Այնպէս որ եթէ մէկն՝ առանց միտ դնելու յունարէն նախաբնագրին, Հայերէնը թարգմանէ ուրիշ լեզուի մ'այն ոճով՝ որ գործածէ բառագրոց մէջ արուեստին յատուկ (technique) բառերուն դրուած մեկնութեամբք, Դիոնեսիոսի Հայերէն թարգմանութեան ոչ սութեան կերպն եւ ոչ նկարագիրը բացատրած կ'ըլլայ, եւ ոչ ալ քննադատութեան օգուտ մ'ըրած համարելու է: Վասն զի եթէ ուղիղ հասկընալ կ'ուզէ զայն, իմաստն Հայերէնէն եւ յունարէնէն հանելու է:

Ուստի բոլորովին անօգուտ է, այն հայերէն բնագիրն ուրիշ որեւէ լեզուի թարգմանել. այլ պէտք է հայերէնն այնպէս գործածել, որ իւրաքանչիւր բառն յունարէն բնագրին համեմատ ճշգրտիւ քըննուի։„

§ 22. Երրորդ պայմանն՝ զոր վերը § 2 դրինք, այն էր՝ թէ պէտք ենք թարգմանութեանս անխառն օրինակ մ'ունենալ։ Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց հայերէն օրինակներն՝ զորոնք համեմատած եմ. եւ գործած, հետեւեալքն են.

—) Տպագրութիւնք: Դաւթի Անյաղթի իմաստասիրական եւ այլ գործոց հրատարակութիւն մ'եղած է ի Վենետիկ 1833ին Մխիթարեանց տպարանէն։ Այս հրատարակութեան 359—408 էջերուն մէջ գրուած է Տասն Ստորոգութեանց ճառն՝ առանց մեկնութիւնը կից ունենալու։ Վերջաբանութիւնն է այս. "Կատարեցաւ տասն ստորոգութիւնսն ասացեալ յեռամեծէն յԱրիստոտէլէ որ ասի ըստ յունարէն ձայնի Կատէղօրիաս։„ Ճառիս վերնագիրն ալ է պարզապէս. "Ստորոգութիւնք Արիստոտելի։„ Այստեղ Դաւթի յիշատակութիւն չկայ. բայց կը յաջորդէ հոս 409—458 էջերուն մէջ նոյն ճառն 9b, 28 տեղէն սկսեալ մինչեւ վերջ, այս անգամ ամէն հատուած ունենալով իրեն կից այն տեղւոյ մեկնութեան հատուած մ'ալ։ Ասոր վերնագիրն է. "Ստորոգութիւնք Արիստոտելի թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ։„

Մեկնութեան առաջին մասը թերի է Վենետկոյ ձեռագրաց մէջ, բայց միւս ձեռագրաց մեծագոյն մասն՝ զորոնք պիտի ստորագրեմ՝ ինծմէ գործածուած ըլլալով, ունի այս մասն ալ։

Վենետկոյ բնագիրն գործոյս Բ Յաւելուածին մէջ* V գրով նշանակած եմ։ Վենետկոյ հրա-

* Այսինքն հեղինակին այն մասին մէջ հրատա-

տարակուսութիւնը յէջսն 349—408 երեք ձեռագրաց համեմատ եղած է, որոնց առաջինը մեծ նոտրգիր է եւ գրուած Հայոց թուականին ՊԾԹ = 1410 Յ. Ք., երկրորդը՝ մանր նոտրգիր՝ գրուած Հայոց ՌՃԼԶ թուականին = 1687 Յ. Ք., իսկ երրորդը՝ մանր նոտրգիր անթուական է: Նոյն տպագրութեան 409 էջէն մինչեւ 458 բնագիրը տպուած է թարգմանութեան հետ, եւ առ այս պիտանի էր յիշեալ երեք ձեռագրաց միայն առաջինը: Մտադիր ըլլալու է որ հնագոյն ձեռագրին մէջ բնագիրն ու մեկնութիւնը միասին կ՚ընթանան, եւ միայն նորագոյն ձեռագրաց մէջ կը գտնուի բնագիրն առանց ընկերակցութեան մեկնութեան: Նոյն Վենետկեան հրատարակութեան մէջ Յաղագս Մեկնութեան գրոց բնագիրը տպուած է 461—486 էջերուն մէջ: Վերնագիրն է. "Սկիզբն եւ Նախագրութիւն գրոցն՝ որ ասի ըստ Յունաց Պերիարմէնիաս (περὶ ἑρμηνείας), եւ հայերէն Յաղագս Մեկնութեան, արտադրեալ ի մեծ իմաստնոյն Արիստոտելէ:„ Ասոր կը յաջորդէ (էջ 487—553) նոյն բնագիրը, բայց կից ունենալով հատած առ հատած նաեւ մեկնութիւնը, որ սակայն թերի է 17a, 25 տեղէն մինչեւ 20b, 14:* Ասոր ալ վերնագիրն է "Պերիարմէնիաս (περὶ ἑρμηνείας) Արիստոտէլի թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ:„

Այս մասերուն ալ նոյն ձեռագիրք գործածուած են, որոնք գործածուած են նաեւ Ստորոգութեանց համար, այսինքն՝ բնագրին համար միայն մանր նոտրգիր ձեռագիր մը 1687ին եւ մանր նոտրգիր մ՚ալ 1709ին գրուած. իսկ բնագրին ու թարգմանութեան համար ի միասին՝ մեծ նոտրգիր ձեռագիր մը 1410ին գրուած:

Այս ձեռագրաց տարբեր ընթերցուածքն երբեմն նշանակուած են՝ բայց առանց դասակարգութեան՝ տպուած բնագրին լուսանցից ներքեւ: Գրոյս Բ Յաւելուածին մէջ եւ այլուր կը նշանակեմ այս ընթերցուածքները V0 տառերով:

---

բակած հայերէն բնագրաց համեմատութեանց մէջ:

Ժ. ԹԱՐԳՄ:

* Տես տպ. Վենետ. էջ 512—513, ծ. 1:

Ժ. ԹԱՐԳՄ:

§ 23. բ) Այժմ գանք Փարիզի, Երուսաղէմի եւ Փաւիայի ձեռագիր աղբերաց: Ազգային Մատենադարանին (Bibliothèque Nationale) մէջ շատ մը ձեռագիր օրինակներ աչքէ անցուցի, ի մասնաւորի երկու հատ՝ Ձեռ. Հայկ. (Fonds Arméniens) թիւ 105 եւ 106, զորոնք Բ. Յաւելուածին մէջ D եւ E տառերով նշանակած եմ, բայց համեմատութեան մէջ պարզապէս “Փարիզի Ձեռագիրք„ (Paris MSS կամ P. MSS) գրելով: Տասն Ստորոգութեանց բնագիրն՝ առանց յարակից մեկնութեան՝ թիւ 105 ձեռագրին թղ. 89—118 մասը կը գրաւէ: Իսկ մեկնութեամբ ընկերացեալ բնագիրը կու տայ թիւ 106 ձեռագիրը՝ թղ. 252—356: Ասոնցմէ թ. 106 հնագոյն է, հաւանականագոյնս ԺԵ դարէն, բայց ամենէն գէշ գրուած. թ. 105 քիչ մ'աւելի կրտսեր է, եւ աւելի վայելուչ գրուած:

Երկու ձեռագիրքն ալ թարգմանութիւնն ու մեկնութիւնը Դաւթի կ'ընծայեն:

§ 24. Համեմատելով այս ձեռագիրն 1887ին միշտ դիտած էի որ թարգմանութեանս մէջ մնացած են դեռ եւս շատ տարբերութիւններ յոյն բնագրէն, որոնք արդիւնք էին ընդօրինակողաց աղաւաղմանց եւ միջին դարու լատինական թարգմանութեանց վրայէն եղած սրբագրութեանց: Յուսով որ ասոնք արտաքսել կարենամ եւ աւելի անխառն բնագիր մը ձեռք ձգեմ՝ 1888ին Երուսաղէմ գնացի, եւ համեմատեցի հոն երկու հնագոյն ձեռագիր որ կը

պահուին Ս. Յակոբայ վանաց Պատրիարքին Մատենադարանին մէջ: Այս երկու ձեռագիրները համեմատութեանս մէջ նշանակած եմ "Ձեռ. Երուս." (J. MSS) կամ "J. 401" եւ "1291": Ի Յաւելուածին մէջ թիւ 1291 ձեռագիրը կը նշանակեմ B, իսկ Թ. 401՝ C տառիւ: Ասոնց վերջինը կ'երեւայ ինձ երկուքէն հնագոյնը: Վերջնոյս մէջ Սորոգութեանց մեկնութեան վերջին հատածը պարունակող թուղթը պակաս է: Երկու ձեռագիրքն ալ անթուական են, բայց գրութենէն դատելով Թ. 401 ԺԳ դարու վերաբերելու է: Կը ցաւիմ՝ որ իմ դիտողութիւնքն՝ որոց մէջ Երուսաղէմի այս ձեռագիրքը լիուլի նկարագրած էի, կորսուեցան ճամբորդութեանս միջոցին: Նոյն տարին քննեցի նաեւ Էջմիածնի ձեռագիրքն ալ, բայց տեսայ որ բան մը չեն աւելցըներ թարգմանութեան բնագրին քննադատութեան նկատմամբ՝ զոր ըրած էի արդէն Փարիզի եւ Երուսաղէմի ձեռագրաց վրայէն:

§ 25. Այս քննադատեալ բնագրին վրայ հիմնուած է այն համեմատութիւնն որ տպուած է այս գրքիս 1—50 էջերուն մէջ: Այս էջերն արդէն տպուած էին, երբ յայց ելայ Փաւխա քաղաքն, ուր լսած էի թէ կայ Գաւթի Անյաղթի ձեռագիր մը Համալսարանին գրատան մէջ: Այս ձեռագրին տարբերութիւնքն միւս ամէն ձեռագիրներէն այնչափ մեծ էին, որ բոլորովին նոր համեմատութիւն մ'ըրի, եւ ստիպուեցայ յաւելուածի մը մէջ դնել այս ձեռագրին համեմատ յաւելլիք եւ ուղղելիք այն

Հայերէն բնագրին վրայ՝ որով գործած էի ցայնժամ։ Բ. Յաւելուածին մէջ տպած եմ փաւիայի այս ձեռագիրն, հրատարակելով՝ որչափ որ կարելի էր՝ իւր ամէն սեպհականութիւնքն ուղղագրութեան, կիտագրութեան եւ շեշտագրութեան։ Այս ձեռագիրն այժմ աւելի մանրամասն պիտի ստորագրեմ։ Ձեռագիրս երկու հատոր է՝ թ. 130 D 42, 43։ Առաջին հատորին մէջ քանի մը քառեակներն ի բաց առեալ՝ ձեռագիրը գրուած է թանձր բամբակեայ թղթի վրայ, որ շատ ողորկ է եւ սպիտակ։ Էջերու մեծութիւնն է $10 \times 6^{3}/_{4}$ մատնաչափ։ Առ հասարակ գրութեան չորս տողերու վրայ կ'իյնայ մէկ գծային մատնաչափ։ Այս ձեռագրին մէջ ճշգրտապատկերն (facsimile) աւելցուած է գրքիս ետեւը։* Կ'երեւայ թէ այժմու կազմը ԺԵ դարէն է։ Շատ մը քառեակներու առաջին եւ վերջին թերթերը կը պակսին, իբրու թէ գիրքն յառաջ կը կարգացուէր արձակ քառեակներով։ Երկու հատորին մէջ ալ թուական չկայ։ Այն գրութիւնն՝ որով գրուած է Գաւթի Մեկնութիւնն Պորփիւրի Ներածութեան վրայ եւ Տասն Ստորոգութիւնքն ու Յաղագս աշխարհհի հանդերձ մեկնութեամբ՝ 1300էն Ց. Ք. կրտսերագոյն չ'երեւար եւ ոչ ալ երի-

---

* *Մեր ձեռքն եղած օրինակին մէջ գրքին սկիզբն է այս ճշգրտապատկերն, որ շատ յաջողած ու գեղեցիկ է։ Գիրն է կանոնաւոր միջին մեծութեամբ բոլորգիր, բայց (նորագոյն) լուսանցագրութիւնք ագեղ շղագիր են։*

*Ժ. ԹԱՐԳՄ։*

ցագոյն քան 1100 Ց. Ք։ Այս ընդօրինակողն նաեւ երկաթագիր գրել կ՚ինար, որով շատ անգամ կ՚աւարտէ տողերը։ Արդեամբք ալ տեղ մը շեղած գրած է կէս էջ մը մանր երկաթագրով։ Ձեռագրիս ուղղագրութիւնն է այնպէս՝ ինչպէս կը գտնենք Թ. ու Ժ. եւ ԺԱ դարու ձեռագրաց մէջ. Այսպէս փոխանակ կրտսերագոյն Ε, ΕΡ, ΕΙΝ, ΕΑΙ, ΕΠΕ, ΟΥΝΕΙΝ, Ο, ΕΛΑΒ (= ἔλαβεν) ուղղագրութեան կը գտնենք գրուած՝ թէեւ ոչ միշտ անփոփոխ՝ Ε, ΕΡ, ΕΙΝ, ΕΑΙ, ΕΠΕ, ΟΥΝΕΙΝ, ΟΥ, ΕΛΑΒ. երբեմն՝ ΕΡΜΗΝΙΟΥΝ փխ. ΕΡΜΗΝΤΟΥΝ, յաճախ ΥΟΥΕΤ եւ ΟΥΛ փխ. ΥΟΥΕΤ եւ ΟΥΛ։ Նոյնպէս նաեւ ΕΡΒΕΦ գրուած է երբեմն փխ. ΕΡΒΕΦ, ինչպէս 19, 36, ΤΕΘ փխ. ΤΕΘ։ Քիչ համառօտութիւնք կան, եւ այն ալ է միայն սովորական -ΝΕ եւ -ΝΕ փխ. -ΝΕΝ եւ -ΝΕΩΝ։ Այս ձեռագրին կիտադրութիւնը դժուարին էր տպագրութեամբ լոյս հանել, մանաւանդ երկու քովէքով կեցած մանր կէտերու եւ երկու մեծ կէտերու տարբերութիւնը։ Կլոր ու չորեքկուսի կէտեր կը գործածուին, ինչպէս նաեւ ծանր ու թեթեւ ստորակէտերն։ Կլոր ստորակէտներ յաճախ կը տեսնենք գծին վրան եւ նաեւ ծանր չորեքկուսի գլխով ստորակէտներ։ Կրկին կէտ կը գտնենք թէ՛ գրութեան ուղղութեան մէջ եւ թէ՛ ուր աւելի դադար կայ՝ գծէն վեր։ Առանձին կէտն երբեմն կլոր է, երբեմն չորեքկուսի, եւ գծին կամ ներքեւն, կամ դիմացն եւ կամ վրան կը կենայ։ Տպագրութեան նշանաց պակասութեամբ մեր տպագրած բնա-

գրին մէջ կրկին կէտ դրուած են յաճախ սկզբնագրին վրայէ վրայ կեցած երկու կարճ հորիզոնական գծիկներու տեղ։ Տեղ տեղ նաեւ երեք կէտ կը գտնենք։ Կիտադրութիւնն ի մասնաւորի առատ ու ճոխ է, եւ գրուածին իմաստն մէջտեղ հանելու համար կիրարկութեան յարմարցուած։ Գրութիւնը շատ անգամ գրեթէ ոչ-բառանջատ անընդհատ է. եւ կիտադրութեան գործածուած ամբողջ դրութիւնը կ'երեւայ թէ ճշդութեամբ ընդօրինակուած է հին գրքէ մ'որ բառանջատ չէր, որուն մէջ կէտերը կը գործածուէին բառերը բաժնելու։ Այլազգ մեկնել չեմ կրնար գծին վրան յաճախ գործածուած անջատանիշը (diastole) կամ ստորակէտը, ուր որ ոչ կրճատում (élision) կայ եւ ոչ երկձայնաւոր (hiatus)։ Շատ բառեր որ նորագոյն բնագրաց մէջ իբրեւ մէկ ամբողջական բառ ի միասին կը գրուին, ասոր մէջ երբեմն բաժնուած են ստորակէտով, զոր օրինակ ՔԻԵՆԷ բառն գրուած է ՔԻԵ, ՆԷ։ Նախադրութիւնք շատ անգամ իրենց նախորդ բառին կից գրուած են. երբեմն կը գտնենք նաեւ ենթամնայ մը դրուած բարդ բառի մը՝ներքեւ։ Օժանդակ է (= ἔστιν) բայը շատ յաճախ կը կցուի իրեն նախորդ ընդունելութեան հետ։

Ձեռագրիս ուղղագրութիւնը բոլորովին միօրինակ չէ, եւ իրեն ունեցած ամէն տարբերութիւնքն ալ պահած եմ այս տպագրութեան մէջ։ Այս այլակերպ գրութեանց ոմանք անտարակոյս ընդօրինակողին սխալմունքն են, բայց ո-

մանք ալ կրնան բանասիրական արժէք ունենալ: Ես պարզապէս փորձեցի տպագրութեանս մէջ հրատարակել բնագիրն՝ ինչպէս որ է ձեռագրին մէջ: Երբ կ՚օրինակէի ձեռագիրը տպագրութեան համար՝ ընդհանրապէս անջատուած գրեցի բառերն որոնք իրարու կից գրուած էին, բայց զգուշացած եմ ուրիշ փոփոխութիւն մ՚ընելէն: Թարգմանութիւնս փաւխայի ձեռագրին համեմատ տպելու ժամանակ ամենեւին աշխատութեան չխնայեցի՝ շեշտերը ճշդիւ պահելու, որոնք շատ նկարագրական են: Քիչ հայերէն ձեռագիր կայ, որոնց մէջ այսչափ խնամով եւ լրութեամբ շեշտուած ըլլան բառերը: Քիչ տեղ, զոր օրինակ 16 a, 13 շեշտը գրուած էր հորիզոնական գրիչք փոխանակ ուղղահայեաց կենալու, եւ այս ալ ջանացի պահել: Հին հայերէնի շեշտման խնդիրը մթին է, եւ նոր հրատակութեանց մէջ շեշտերը չեն դրուիր: Կը յուսամ թէ իմ այս փոյթս՝ նաեւ շեշտագրութիւնը պահելու տպագրութեան մէջ՝ գործնական կ՚ըլլայ բանասիրաց, որոնք հետաքրքիր են հին հայերէնի շեշտին ինչ կերպ ըլլալը որոշելու:

§ 26. Հոս կը դնենք այս ձեռագրին բովանդակութեան ցանկը: Առաջին հատորին մէջ՝ 1. հին ձեռքով, թէեւ ոչ նոյն՝ բայց ժամանակակից այն ձեռքին հետ, որ գրած է ամբողջ Բ. հատորը, գրուած է յունարէն տնկաբանական բառերու ցանկ մը հայերէն տառերով եւ անոնց համապատասխանող ռամկօրէն հայերէն բառերով: — 2. Նոյն ձեռքէն՝ փիլոնի բառգիրք

անուանց Հին կտակարանին։ Այսր վերնագիրն է*. «Այս ձայնք Հեբրայեցւոց անուանց թարգմանեցան ի յունարէն լեզու ի ձեռն Փիլոնի, յաջորդի առաքելոց։» Կ'երեւայ թէ այս է աւելի հնագոյն ձեւն Փիլոնի բառագրոց զոր ունինք յունարէն եւ լատիներէն։ Այն ձեռքն՝ որ գրած է այս 1 եւ 2 կտորները՝ ես կը կոչեմ $A_1$։ — 3. Նորագոյն ձեռքէ մը, զոր C կը կոչեմ, եւ անողորկ թղթի վրայ գրուած կը յաջորդէ Արիստոտէլի ճառն Յաղագս աշխարհի եւ Յաղագս Առաքինութեանց։ Առաջնոյն սկիզբը թերատ է։ — 4. Պորփիւրի Ներածութիւնն դարձեալ ուրիշ ձեռքէ, զոր B կը կոչեմ, որ աւելի հնագոյն է քան զC, բայց կրտսեր քան զA եւ $A_1$։ — 5. Դաւթի մեկնութիւն Ներածութեան վրայ։ Այսր սկիզբն է B ձեռքէ, բայց մեծ մասն է A ձեռքէ, որ գրած է ամբողջ Բ հատորը։ Գրքին այս մասն ամէնէն աւելի վնասուած է խոնաւութենէ։ Դաւթի մեկնութեան վերջին մասն ալ դարձեալ ուրիշ եւ շատ յատուկ ձեռքէ մը գրուած է, զոր $A_2$ կը կոչեմ։ Այս ձեռքն թերեւս ժամանակակից է Աի, եւ յունարէն գրութեան նմանող է, այնու որ ամէն ձայնաւորով սկսող բառերուն սկիզբն շնչանիշ կը դնէ. — 6. $A_1$ ձեռքէն գրուած հին թարգմանութիւն մը Ստորոգութեանց վրայ

* Հեղինակն այս վերնագիրն ալ չէ դրած հայերէն բնագիրներով, այլ միայն անգղիերէն թարգմանութեամբ, ուստի ստիպուեցանք նոր թարգմանութեամբ դնել։ Ծ. ԹԱՐԳՄ.։

եղող մեկնութեան մը, որուն սկիզբը կորսուած է։ — 7. Հին հայերէն թարգմանութիւն Եւկղիտեայ՝ Ա գիրք մինչեւ ցԳ. Առաջադրութիւն հանդերձ երկրաչափական գծաձեւովք. Այս մասն ալ $A_1$ ձեռքէն։

Հատոր Բ կը բովանդակէ Սորոգութիւնքն ու Ցաղագս Մեկնութեան գիրքն գեղեցիկ քաջավարժ եւ հին ձեռքէ մը, զոր A կը կոչեմ։ Լուսանցքի վրայ եւ բնագրին մէջ հայերէնի նորագոյն ընթերցուածքներ սփռուած են՝ գլխաւորաբար C ձեռքէն, որոնք՝ ինչպէս երբեմն նշանակուած է, առնուած են "ի գրոց փռանկաց։„ Քիչ բացառութեամբ՝ ամէն այլ ընթերցուածք Վենետկոյ բնագրին եւ այլ ձեռագրաց՝ զորոնք իմ ձեռագրաց համեմատութեանս (apparatus criticus) մէջ աւելցուցած եմ նշանակելով, նաեւ C ձեռքէն այնպէս նշանակուած են աւելցնելով՝ շատ անգամ նաեւ փորձ մ'ալ եղած ըլլալով բուն բնագիրն եղծանելու։ Ժամանակակից $A_1$ ձեռքն ալ բնագրին մէջ կամ լուսանցքի վրայ քանի մը սրբագրութիւնք աւելցուցած է, զորոնք խնամով նշանակած եմ իւրաքանչիւր էջին ներքեւ։ Թերեւս այս ձեռքն է՝ եթէ ոչ բուն առաջին ձեռքն ինքնին՝ որ հոս հոն ջնջելու կիտանշաններ (punctum delens) դրած է։ $A_1$ ձեռքին ըրած սրբագրութիւնք առնուած ըլլալու են Ե դարու գրուած յունաբէն ձեռագիրներէ։ Օրինակի համար այս ձեռքն է որ 19b, 8 տեղն ("անուն ոչ ասեմ, այլ անո-

րոշելի անուն„ խօսքին մէջ*) "ոչ„ բառին վրայ ջնջման կիտանշան կը դնէ, եւ ասով սա ընթերցուածը յառաջ կը բերէ՝ "անուն ասեմ, այլ անորոշելի անուն„ (ὄνομα μὲν λέγω, ἀλλ' ἀόριστον ὄνομα). Մինչդեռ բոլոր յոյն ձեռագիրք կը կարդան՝ ὄνομα μὲν οὐ λέγω, ἀλλ' ἀόριστον ὄνομα (անուն ոչ ասեմ, այլ անորոշելի անուն:*) Կ'երեւայ թէ նաեւ այս ձեռքն է՝ որ խորագրոց մեծագոյն մասը գրած է, որոնք կարմրագիր են: Կարմրագիր քանի մը սրբագրութիւնք չկրցայ ճանչնալ թէ A₁ ձեռքէ՞ն են արդեօք թէ C գրութեան: C ձեռքին բոլոր ընթերցուածք աղաւաղութիւնք են բնագրին. եւ փաւխայի ձեռագրին յարգը ճիշդ յայսմ է որ զմեզ շատ աւելի ի վեր կը հանէ ժամանակաւ քան այս միջին դարու մէջ եղած աղաւաղութիւնքն՝ որ Ն դարու թարգմանութիւնն այլակերպած են: Ցատամնեցայ նախ նշանակելու տպագրեալ հրատարակութեան ձեռագրին՝ ինչպէս նաեւ միւս ձեռագրաց տարբեր ընթերցուածքն, այնպէս յոռի են ամէնքն ալ առհասարակ: Սակայն ի վերջոյ իւրաքանչիւր էջին ներքեւ նշանակեցի զասոնք ալ՝ միայն որպէս զի ցուցընեմ թէ հին հայերէն բնագիրք ինչ աղաւաղմանց ենթակայ եղած են միջին դարերու մէջ փրանկաց ազդեցութեան

---

* Այս փակագծեալ հայերէն բնագիրը (տես՝ տպ. Վենետ. էջ 473, 6) մենք աւելցուցինք ընթերցողաց դիւրութեան համար. հեղինակը լոկ յունարէն կոչումները կը շատանայ: Ծ. ԹԱՐԳՄ.:

ներքեւ: Այս պարագայն կը ցուցընէ որ պէտք է յետս ընթանալ հանիլ բնագրի աւելի հնագոյն շրջան մը: Նոյն զգուշութիւնը գործադրելու է նաեւ երբ Հայերէն Աստուածաշունչ քննադատական նպատակաց կը գործածէ մէկը:

§ 27. Այս ձեռագրին ինչ բախտ ունեցած ըլլալը ծանօթ չէ ԺԶ դարէն յառաջ: Սակայն յիշեալ դարուն սկիզբը Pero di Beccarisi անուն անձին կը վերաբերէր, որ Փաւիայի համանուն ազնուական գերդաստանին անդամներէն մին էր: Քիչ մ'ետքն ձեռագրին տէրն էր Թեսէոս Ամբրոսիոս՝ ի դրանկաց Ալբոնեսեանց Փաւիայի (Theseus Ambrosius ex comitibus Albonesii), որ Իտալիոյ մէջ Արեւելագիտական Ուսմանց առաջին ռահվիրաներէն մին է, եւ հեղինակ "Ներածութեան Քաղդէարէն, Ասորերէն եւ Հայերէն եւ այլ տասն լեզուաց„ գործքին. (Introductio in Chaldaicam linguam, Syriacam. atque Armeniacam, et decem alias linguas, Excudebat Papiae. Joan. Maria Simoneta Cremonen. In Canonica Sancti Petri in Coelo Aureo. Sumptibus et Typis, auctoris libri. Anno Virginis partu. 1539. Kal. Martij.) Սոյն հեղինակին իւր "Ներածութեան„ մէջ յառաջ բերած հայերէն օրինակներէն մէկ քանին առնուած են բուն այս ձեռագրէն, եւ կը գտնուին օրինակի աղագաւ յէջս 144, 156, 165, 166: Սոյն այս "Հայերէն տառերով գրուած Արիստոտէլի հնագոյն գիրքը„ (Antiquissimus Ari-

stotelis liber, Armenicis literis scriptus) կը յիշէ Թեսէոս Ամբրոսիոս յէջն 168 ։ Նոյնպէս էջ 144 կը գրէ․ “Հայերէն տառերով գրուած հնագոյն գրքի մը մէջ յորում Պորփիւրի Նախասութիւնք եւ դոյզն ինչ Արիստոտէլի Տրամաբանականք հայերէն տառերով եւ լեզուաւ գրուած են՝ գտնելով՝„ կը փութայ երբայական այբուբենի տառադարձութիւնը դնել, որ այս ձեռագրին Ա հատորին մէջ կը գտնուի ։ Նոյն անձը նոյնպէս կու տայ Պորփիւրի եւ Արիստոտէլի ընթերցուածներ՝ որ միայն այս ձեռագրին մէջ կը գտնուին, եւ անգամ մ՚ալ կը տպագրէ ծանօթութիւն մը, զոր այս ձեռագրին լուսանցքին վրայ կրտսերագոյն ձեռքէ մը գրուած կը գտնենք ։ Փաւիայի Համալսարանին մէջ երեք ուրիշ հայերէն ձեռագիր ալ կայ, որ այս Թեսէոս Ամբրոսիոսի կը վերաբերէին, եւ որոնց մէջ հայերէն գրերով նշանակած է իւր անունն ու տիտղոսները ։ Այս միւս ձեռագիրք աւելի կրտսերագոյն ժամանակաւ՝ Եկեղեցական մատեաններ են ։ Անշուշտ իւր ձեռքի գրութիւնքն են այն շատ մը ընդտողեան լատիներէն դիտողութիւնք, որ կը գտնուին այս գրութեանց եւ նաեւ Պորփիւրի եւ Արիստոտէլի թարգմանութեանց մէջ ։

§ 28. Այժմ անցնինք նկատել թարգմանութեանց երկրորդ խումբ՝ այսինքն Յաղագս Աշխարհի եւ Յաղագս Առաքինութեանց թարգմանութիւնք ։ Ասոնց հնութիւնն աւելի նուազ ապահով է քան թէ առաջին խմբին թարգմանութիւնք, եւ ամէնէն կանուխ գտած տեղեկու-

թիւննիս է Գրիգորի Մագիստրոսի Նամակներէն այն կտորը՝ զոր վերը դրինք՝ § 10: Մագիստրոս աշակերտներէն կը խնդրէ խաւրել իրեն Արիստոտէլի գրութիւնն՝ զոր ընդունած էին, եթէ անոր վերնագիրն էր՝ "Յաղագս երկնային մարմնոյն եւ գնդատեսութեան երկրի․„ եւ "Յաղագս օրինագրութեան կենցաղոյս, յորս յիշատակէ եւ զորակութեանց քաղաքումն եւ զախտիցն բաժանմունսն՝ զոր անուանեն խորհրդական:„ Այսպէս յիշուած ճառերն են անշուշտ Յաղագս Աշխարհի եւ Յաղագս Առաքինութեանց: Գտնելով ոճէն՝ այս ճառերուս թարգմանութիւնքն Ը կամ Թ դարէն կ'երեւան:

Յաղագս աշխարհի գրոց թարգմանութիւնը նուազ տառական չէ քան Ստորոգութեանց թարգմանութիւնը, եւ հարկ է որ ներկայացընէ այնպիսի յունական սկզբնագիր մ'որ շատ կը տարբերի Արիստոտէլի Պերլինեան հրատարակութեան մէջ տպուած բնագրէն: Բայց միտ դնելով այն պարագային որ երկու գրքերն ալ աւելի գործածուած են իբրեւ փիլիսոփայութեան բնագիր-մատեաններ միջին տարուց մէջ, իրենց բնագիրը շատ մեծաղանգուած աղաւաղմանց ենթարկուած է: Ես ալ շատ տատամսեցայ հայերէնին տարբեր ընթերցուածքն նշանակել, վասն զի ասոնց մեծ մասն այնպէս յայտնապէս աղաւաղութիւնք են բուն թարգմանութեան, որ կը տարակուսիմ թէ այս ամէնն գիտնալէն ետքն ալ արժանի՞ էր աշխատու-

թիւնը: Նաեւ այն տարբերութիւնքն՝ զոր նշանակած եմ, միայն քաղուածոյ մըն են. վասն զի անկարելի էր հոս հետեւիլ իմ այն ծրագրիս, որուն հետեւեցայ Յաղագս Մեկնութեան գրոց եւ Ստորոգութեանց նկատմամբ՝ գնելով թարգմանութեան մեր առջեւ դրած ամէն որեւիցէ տարբեր ընթերցուածքը:

Բայց 1891 տարւոյ աշնան, երբ իմ համեմատութեանս 51—71 էջերը արդէն տպուած էին, բախտն ունեցայ Էջմիածնի վանաց Մատենադարանին մէջ հին եւ երկաթագիր տառերով գրուած ձեռագրի մը մէջ գտնելու այս վերնագրի տակ՝ “Արիստոտէլի Յաղագս Աստուծոյ„՝ օրինակ մը սոյն թարգմանութեան, որ կը սկսի էջ 397b, 16 διὸ καὶ . . .* տեղէն մինչեւ ճառիս վերջը, շատ աւելի ընտրելագոյն քան այն ամէնն՝ որոնց յառաջ հանդիպած էի: Այս ձեռագիրն Կարինեանի “Մայր. Ցուցակին„ մէջ, որ տպուած է Տփղիս 1863ին, թիւ 2050 նշանակուած է, իսկ “Վանաց առձեռն ցուցակին„ մէջ 2093: Թղթեայ է եւ գրուած Աղթամար կղզին վանայ մօտ՝ 1223ին Ց. Ք: Ձեռագրին մէջ թարգմանութիւնը Դաւթի Անյաղթի չէ ընծայուած:

Թարգմանութեանս այս վերջին կէսն ինչ-

---

*Այսինքն՝ Վենետիկոյ տպագրութեան (տպ. 1833) էջ 619, 13 տեղէն (“Վասն որոյ եւ ի նախնեացն ոմանք կարծեցին ասել . . . .,) մինչեւ վերջը, որ է ըսել ամբողջին համարիւ գրեթէ երեքին մէկ մասը:

Ծ. ԹԱՐԳՄ:

պէս որ ձեռագրիս մէջ կը գտնենք՝ համեմատելով յունարէն բնագրին հետ՝ կը տեսնենք թէ ինչ մեծ է այն աղաւաղութիւնն որ պատած է սովորական բնագիրն՝ որ տպագրուած է ի Վենետիկ, եւ որոնք կը գտնուին իմ տեսած բոլոր միւս ձեռագրաց մէջ։ Օրինակի համար իմ համեմատութեանս տպագրուած 62—71 էջերուն մէջ նշանակած հետեւեալ ծանօթութիւնքն պէտք է մեկդի ձգել։

| | | | |
|---|---|---|---|
| Էջ 63. | Ծան. | յէջն (հրատ. Պէքքէրի) | 397b, 34*, 398a 1. 398a, 13. 398a, 14։ |
| „ 64. | „ | „ | 398a, 14. 398a, 16. 398a, 18. 398a, 21. 398a, 22։ |
| „ 65. | „ | „ | 398b, 21. 398b, 23. 398b, 30. 398b, 31։ |
| „ 66. | „ | „ | 399a, 12. 399a, 19. 399a, 25։ |
| „ 67. | „ | „ | 399b, 22. 399b, 23. 400a, 1. 400a, 3. 400a, 6։ |
| „ 68. | „ | „ | 400b, 12. 400b, 13. 400b, 17. 400b, 23. 400b, 26։ |
| „ 70. | „ | „ | 401b, 6. 400b, 8. 400b, 11. 400b, 16։ |
| „ 71. | „ | „ | 401b, 28. 401b, 29։ |

Այս ամէն տողերու մէջ յիշեալ ձեռագիրն յունարէնին հետ կը միաբանի։ Ուրիշ

* Այս տեղ կը նշանակէ հեղինակն իր համեմատութեան էջն, որուն մէջ Պէքքէրի հրատարակութեան էջերու դիմացն եւ այն կարգաւ կը նշանակուին հայերէնի տարբերութիւնք. այնպէս որ հեղինակին ցուցուցած այս տեղերը գտնելու համար՝ պէտք է համեմատութեան մէջ նշանակուած Պէքքէրի գրքին էջերուն միտ դնել։

Ծ. ԹԱՐԳՄ։

շատ տեղերու համար ալ կը ստիպէ որ իմ համեմատութեանս մէջ տպուած ծանօթութիւնք փոխեմ, ինչպէս հետեւեալքը։

Էջ 62. (Հրտ. Պէքէր) 397b, 18 τὰ καὶ δι᾽ . . . τῇ γε οὐσίᾳ]* Այստեղ հայերէնն ամենեւին տարբերութիւն չի ցուցըներ։ Յունարէնի սա բառերը τῇ μὲν Θείᾳ δυνάμει πρέποντα καταβαλλόμενοι λόγον. οὐ μὲν τῇ γε ουσίᾳ թէեւ թարգմանուած է "... զաստուածային զօրութիւն նշանակելով, սակայն ոչ զգայութիւն„. սակայն աւելկայ կընայ յարասութեան կտոր մ'ըլլալ. (Վ. "Նկատեմք յէսս զաստուածային զօրութեան նշանակ. սակայն ոչ զգոյացութիւնն„։

Էջ 63. 398a, 10 οὐκ] Այստեղ ձեռագիրն այս "ոչ„ բառը չունի. բայց կը պահանջէ որ յաջորդ պարբերութեան մէջ ἀλλ᾽ οἷον (Վ. այլ որպէս Ն. "այլ իբրու„) բառերէն ետքը կարդանք ἐπὶ τοῦ μεγάλου βασιλέως ("յաղագս մեծի թագաւորի„. Վ. . . . "թագաւորացն„։)

Էջ 64. 388b, 5. ἐπιτελεῖν ἃ βούλοιτο] Հոս ձեռագիրը կը պահէ ἐπιτελεῖν (կատարել), բայց չունի ἃ βούλοιτο (զորս եւ կամեցի**։)

Էջ 65. 398b, 26. Այստեղ ձեռագիրն ունի. "որոց եւ ներհական. եւ մանաւանդ առաջին շարժմունս ի շարժութիւն միւսոյն լինելով„. (Վ. "է եւ ներհակ„ եւն։)

Էջ 66. 399b, 12. Հոս ձեռագիրն այնպէս կը թարգմանէ իբր թէ բնագիրն եղած ըլլար "ὅπερ οὐδαμῶς ἐστὶν ἐμπόδιον, οὔτε κινεῖ πρὸς διάνοιαν

---

* Հեղինակն այս տեղերս ալ յունարէնը նշանակելով գոհ կ'ըլլայ։ Մենք հայ ընթերցողին լուսաւորութեան համար փակագծի մէջ կը դնենք հայերէն ընթերցումները. Վ՝ նշանակելով Վենետիկոյ տպագրութեան ընթերցուածն, եւ Ն այս նոր ձեռագիրն, զորոնք իրարու համեմատել է նպատակ հեղինակիս եւ ասով ուղղել իւր ըստ Վ ըրած համեմատութիւնը։ Ծ. ԹԱՐԳՄ։

** Սակայն մեզ կ'երեւայ թէ կայ այս խօսքն ամբողջովին հայոյն մէջ. հմմտ. Վ (էջ 621, 13) "կատարէ զինչ եւ իցէ„. Ն "կատարէ զոր եւ իցէ„։

Ծ. ԹԱՐԳՄ.։

ἡμᾶς ἀπιστίας· (= Ն "բնաւ ոչ է արգել. ոչ շարժէ առ ի մտածութիւն զմեզ թերահաւատութեան". Վ. "որ զբնաւ ունի, եւ ոչ է պարտ շարժել զմեզ առ ի մտածութեան թերահաւատութեան":)

Էջ 67. 399b, 18. Հոս ձեռագիրը կը պարունակէ νόμων κόσμος καὶ πολιτείας (= Ն. "օրինաց զարդարումն եւ քաղաքավարութեան". Վ. "օրինաց զարդարումն եւ քաղաքավարութիւն":)

Էջ 68. 400b, 18. Հոս մի միայն սա փոփոխութիւնը կայ որ ἀποδώσων (= Ն. Վ. "զի հատուցանէ") կը կարդայ փոխանակ յունարէնին σιτησόμενος.

Էջ 68. 400b, 24. Հոս ձեռագիրն միայն յունարէնին ὄντως (. . . լինելով) բառը չունի. բայց առանց ուրիշ տարբերութեան (Ն հոս "... ողջ պահէ զկամս արարողին." Վ. տարբեր "ի յողջ պահողաց զկամս օրինաց.")

Էջ 69. 401a, 15. Ձեռագիրն յունարէնին παῖς (որդի) եւ ἀτέρμονος (անեզրական) բառերը չունի, բայց առանց ուրիշ տարբերութեան. (վասն զի Ն է "..ի ժամանակի լինի. ասացեալ հետեւելով ի յաւիտենէ ի միւս եւ[ս] յաւիտեան." իսկ Վ. "ի ժամանակի. քանզի եւ նա ժամանակ է. լինի ասացեալ ըստ հետեւման եւ յաւիտեան. ընդորով եւ յաւիտենականք." որ տարբեր է յունականէն:)

Էջ 69. 401a, 19. Ձեռագիրը միայն ἐπὶ τῶν καρπῶν (Ն. Վ. "Վասն պտղոցն") կ'ըսէ փխ. յունարէնին ἀπὸ τῶν καρπῶν ("ի պտղոց") բայց արդեամբք ուրիշ տարբերութիւն չի ցուցըներ.

Էջ 70. 401b, 9. Ձեռագիրն αἰτίαν ունի (Ն. Վ. "ի ... պատճառէ") փխ. յունարէնին οὐσίαν (յ ... էութենէն.") բայց մնացեալը կը միաբանի յունարէն բնագրին հետ:

Էջ 71. 401b, 23. Ձեռագիրն ունի ἐστιν οὐκ ἄλλο τι πλὴν ἐκ θεοῦ (= Ն. "... ոչ այլ ինչ են՝ բայց յԱստուծոյ." իսկ Վ. այլազգ. "ոչ ումեք է գիտելի՝ բայց միայն Աստուծոյ:")

Էջ 71. 401b, 26. Հոս ձեռագիրը կը միաբանի սովորական բնագրին հետ, միայն որ "յԱստուծոյ ——րէնէն ի— պատուհասից գոլով" կ'ըսէ (փխ. Վ. "... յԱստուծոյ պատուհասին:")

Քիչ տեղեր՝ ուր ես աստղ մը դնելով

նշանակած էի այն տեղերու աղաւաղութիւնը սովորական հայերէն բնագրին մէջ՝ այժմ այս ձեռագիրն ուղիղ բնագիրը կը դնէ մեր առջեւ. օրինակի համար՝ էջ 66. 399a, 19 φερωνύμως բառն տառ առ տառ փոխադրուած է "բեր. անուանաբէս.„ որուն տեղ սովորական բնագրին մէջ անիմաստ գրիչ մը գրած է "բարերարութեամբ:„ Այսպէս՝ էջ 66.399a, 31 ձեռագիրը կը կարդայ "Նշանակէ„. զոր արդէն գուշակած էի սովորական բնագրին աղաւաղութեան մէջ: Նոյնպէս՝ էջ 68.400b, 23 ձեռագիրս ունի "միում„ փխ. "իւրում.„ ինչպէս գուշակած էի այն ծանօթութեան մէջ:

Թարգմանութեանս սկզբնական բնագրին մէջ՝ ինչպէս որ պահած է այս ձեռագիրը, կային սխալներ ալ, զորոնք կրտսերագոյն ժամանակաւ գրիչք սրբագրած են:

Էջ 498a, 17 յունարէնին ἀσίας (Ասիաս) բառը թարգմանուած էր այնպէս որ իբր թէ այն տեղ οὐσίας (Ուսիաս) գրուած ըլլար: (Վասն զի Ն այստեղ ունի՝ "եւ ընդ նմին ամենայն իշխանութիւն Ուսիաս կատարեալ լինիւր„. զոր յետինք սրբագրած են, այսպէս՝ Վ "որովք ամենայն իշխանութիւնն կատարեալ լինի„. (տպ. Վենետ. էջ 620, 36:)

Էջ 398b, 9 յունարէնին κινεῖν (Կինէին) բառը թարգմանուած է իբր թէ ըլլար κρίνειν (Կրինէին...) (Վասն զի Ն ունի այստեղ՝ "զարեգակն Կրինէին եւ զլուսին„. զոր յետինք ուղղած են, ինչպէս Վ՝ էջ 621, 19 "զարեգակն Կինէին եւ զլուսին„:)

Էջ 401a, 11 յունարէնին τὴν γὴν (Տէն գէն) ընթերցուածն այնպէս թարգմանուած է իբր թէ ըլլար ἧσι πληγήν (զվէրս, հարուած.) վասն զի այլապէս չեմ կրնար մեկնել ձեռագրին այս տեղ կարդացած՝ "գանիվ„ բառը. (տես Ն "Վասն զի ամենայն զեռուն գանիվ ճարակեալ„. Հոս Վ՝ էջ

627, 10 «քանզի ամենայն զեռուն հողոյ ճարակեալ» փոխած է. իսկ Փարիզի Ձեռ. Թ. 106 «. . . զեռուն բոյնս . . .» որ աղաւաղութիւն է բոյնս բառի։)

Սակայն այս եւ այլ անկատարութեամբք հանդերձ՝ կարծեմ թէ այս թարգմանութիւնն ի վերջոյ շատ հին բնագիր մը մեր առջեւ կը դնէ այս ստոյիկեան հետաքրքրական ճառիս, եւ քանի մը տեղ ալ կայ՝ ուր մեր առջեւ կը դնէ այն ընթերցուածն՝ զոր Ապուլէիոս (Apuleius) կ'երեւայ թէ ունեցած է։*

§ 29. Յաղագս Առաքինութեանց դըրուագեալ ճառը կ'երեւայ թէ Յաղագս աշխարհի ճառին հետ միեւնոյն ժամանակ թարգմանուած է հայերէն**։ Իմ էջ 72—75 տպուած հաստատութեանս համար աւելի ընտիր ձեռագիր չունէի քան թէ Վենետկոյ տպագրութիւնը, որմէ արդեամբք տարբեր բան չտեսայ ոչ Փարիզի, ոչ Երուսաղէմի եւ ոչ Էջմիածնի ձեռագրաց մէջ։ Սակայն 1892 տարւոյ գարնան Վատիկանու Մատենադարանին մէջ Cod. Arm. III, fol. 456v — 461r *** գտայ հնագոյն

* Էջմիածնի այս կարեւոր հատուածն խաւրած է մեզ հայագէտ գիտնականը, զոր կը դնենք այս գործքին կից իբր Յաւելուած Ա։ ծ. ԹԱՐԳՄ.։

** Տես «Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ». տպ. Վիեննա, 1892, էջ 112, ուր կը տեսնուի որ այս ճառը թարգմանուած ունէր արդէն Աղեքսանդրի Բարառնութեանց կից կտորին յօրինողը կամ թարգմանաբար յերիւրողը. ծ. ԹԱՐԳՄ.։

*** Վատիկանու ձեռագրիս եւ ի մասնաւորի այս կտորիս համար՝ տես «Հանդէս Ամս.» 1892, Թ. 8

օրինակ մը քան իմ տեսած բոլոր միւս օրինակները։ Այս ձեռագիրն գեղեցիկ գրուած է ընտիր մագաղաթի վրայ եւ ԺԳ դարու առաջին կիսէն է. ուղղագրութիւնն՝ ինչպէս նաեւ գրչին տեղ տեղ դատարկ թողուլն ուր չէր կրցած ընթեռնուլ իւր գաղափար-օրինակը, կը ցուցնեն թէ շատ հին ձեռագրէ մ'օրինակուած է այս։ Սակայն այս Վատիկանեան ձեռագրի բնագիրը շատ քիչ կը տարբերի տպուած բնագրէն։ Միայն երեք տեղ կայ որ Վենետկոյ տպագրեալ օրինակը կ'ուղղուի այս ձեռագրով. եւ ասոնք են հետեւեալքը։

Էջ 1250a, 23* καθ' ἣν . . . ἀπολαύσεις) Հոս Վատիկանու ձեռագիրն ունի յունարէն սա ընթերցումը καθ' ἣν αἱροῦνται τὰς φαύλας ἡδονὰς κωλύοντος τοῦ λογισμοῦ (այսինքն՝ "բատ որում յօժարեալք լինին առ յոռին հեշտութիւնս՝ արգելլով բանականին„ տպ. Վեն. էջ 630, 24 է ". . . . ուն արգելլով բանականիս„։)

Էջ 1250b, 18. Վատիկանեան ձեռագիրը կը կարդայ "առ իւս տարբերեալս„. որմէ արդէն գուշակած էի թէ աղաւաղուած ըլլայ Վենետկոյ բնագիրը. (Վեն. էջ 631, 33 ". . առ իւս ստաբար բերեալս„։)

Էջ 1251a, 23. Վատիկանի ձեռագիրը հոս (= տպ. Վենետ. էջ 633, 24 "բանականին ոչ արգելլով„.) չունի "ոչ„ (μὴ) բառն "արգելլով„ (κωλύοντος) բառէն յառաջ, եւ այսպէս կը միաբանի յունարէն բնագրին հետ։

---

էջ 245 եւն. մանաւանդ՝ էջ 247, § 16։

Ծ. ԹԱՐԳՄ.։

* Ինչպէս ցայս վայր, նոյնպէս այստեղ Պէքքէրի հրատարակութեան էջերը նշանակած է հեղինակն իւր հրատարակութեան մէջ։ Մենք փակագծի մէջ աւելցուցինք հայերէն ընթերցուածքներն՝ ընթերցողաց դիւրութեան համար։ Ծ. ԹԱՐԳՄ.։

Այս երկու ճառերն՝ Յաղագս Աշխարհի եւ Յաղագս Առաքինութեան՝ Վենետկոյ տպագրութեան մէջ կորեան, Մամբրէի եւ Դաւթի գործոց հետ տպուած են՝ յէջս 603—635։ Ձեռագրաց մէջ ասոնց վերնագիրն է միշտ՝ "Արիստոտէլի իմաստասիրի թուղթ առ Աղէքսանդր թագաւոր։ Պատմութիւն Յաղագս Աշխարհի եւ Յաղագս Առաքինութեանց։„ Վենետկոյ տպագրութիւնն եղած է վեց ձեռագրաց համեմատ, որոնց երեքն մեծ նօտրգրով են եւ Հայոց թուականին ՉՀԷ, ՌԽԷ եւ ՊԾԹ տարիները գրուած են, որոնք հաւասար են 1318, 1598 եւ 1410 Յ. Ք. տարիներու։ Ասոնց հրատարակիչ Մխիթարեան Հայրն ոճէն դատելով կը կարծէ թէ ասոնք Ե դարու՝ հայերէն մատենագրութեան ոսկեդարուն՝ վերաբերին։ Ես իմ կողմանէս աւելի յետին ժամանակի կը համարիմ։ Յամենայն դէպս՝ ասոնք թարգմանուած չեն ոչ այն անձէն՝ որ թարգմանեց Ստորոգութիւնքն եւ Յաղագս Մեկնութեան գիրքն, եւ ոչ ալ այն անձէն՝ որ թարգմանեց Ներածութիւնն, որուն թարգմանութեան այժմ մեր մտադրութիւնը դարձընելու ենք։

§ 30. Ներածութիւնը Վենետկոյ 1833ի յիշեալ տպագրութեան մէջ հրատարակուած է, եւ քառասուն տարի յառաջ նաեւ Մատրասի Հայերէն։ Ներածութեան Վենետկոյ տպագրեալ բնագիրը վեց ձեռագրաց վրայ յեցեալ է, որոնց երկուքն՝ մեծ նօտրգիր գրչութեամբ՝ 1319 եւ 1411 Յ. Ք. տարիներէն են։ Այն այս երկու ձե-

ռագիրներէն տպուած է նաեւ Դուլթի Մեկնութիւնը Ներածութեանս վրայ։ Ներածութիւնը Վենետկոյ տպագրութեան 227—250 էջերը կը գրաւէ, իսկ Դուլթի սոյն գործքին վրայ գրած Մեկնութիւնը՝ էջ 251—256։ Այս մեկնութիւնն՝ ի բաց առեալ սկիզբն ու վերջը, առաջին ձեռքէն գրուած է Տիկինեան ձեռագրին (Cod. Ticinus) մէջ, ուստի եւ ասոր մեծագոյն մասին բոլորովին վստահելի բնագիր մ'ունինք։ Միեւնոյն բանն ըսել չենք կրնար բուն իսկ Ներածութեան նկատմամբ։ Իմ տեսած ամէն ձեռագիրներէս անխառնագոյնն է B[1] ձեռքէ գրուածն Տիկինեան ձեռագրին մէջ, որ շատ օգնեց ինձ բնագիրն ընդօրինակութեանց աղաւաղութիւններէն ազատելու։ Դժբախտաբար Վենետկոյ տպագրութեան միայն 227—239 էջերու բնագիրը կը բովանդակէ. սոյն տպագրութեան վերջին տասն՝ 240—250՝ էջերը չկան ձեռագրիս մէջ։ Տպագրեալ օրինակը համեմատեցի նաեւ Տփղիսի ԺԴ դարէ մէկ ձեռագրին եւ Փարիզի ձեռագրի մը հետ, (Nr. 106 Fonds Arméniens) ինչպէս նաեւ Էջմիածնի գեղեցիկ գրուած ձեռագրի մը եւ նաեւ Մատրաս 1793ին լոյս տեսած տպագրուած օրինակին հետ։ Վերջինս տպուած էր հին ձեռագրէ մ'որ բերուած էր Պարսկաստանի Սպահան քաղաքէն։ Այս ամէն աղբերաց համեմատութեամբ համոզուեցայ որ այս Թարգմանութիւնն Արեւմտեան Աղբիւր-

[1] Տես այս Նախաբանիս § 26։

ներէն շատ խառնուած եւ թերեւս սրբագրուած ալ է: Իմ համեմատութեանս մէջ՝ որ կը գտնուի այս գրքիս 76 եւն էջերուն վրայ՝ միայն այն տարբերութիւնները նշանակած եմ՝ ինչպէս նաեւ սովորաբար, որոնք ամէն օրինակաց մէջ ալ միաբան կը գտնուին: Սակայն յամենայն դէպս այս ճառին հայերէն բնագիրը յունական ձեռագրաց յոռի ցեղ մը կը ներկայացընէ, եւ սով չհամարձակեցայ գիրքս ճոխացընել ասով, թէեւ այս էր նախնաբար դիտաւորութիւնս:

Այս թարգմանութեանս ժամանակին նկատմամբ որոշ բան մ'ըսել դժուար է: Հաւանականագոյնս միեւնոյն ժամանակ եւ միեւնոյն ձեռքէ թարգմանուած է այս, որմէ եւ երբ թարգմանուեցաւ ասոր կից յունարէն մեկնութիւնն "ի Դաւթէ" (ἀπὸ φωνῆς Δαβίδ.) Այս ալ այնպէս տառ առ տառ թարգմանուած է՝ ինչպէս Ստորոգութիւնքն եւ Յաղագս Մեկնութեան գրոց թարգմանութիւնքն, բայց քերականական ինքնուրոյն յատկութիւններ ունի՝ որ կ'արգելեն զմեզ ենթադրելու թէ նոյն ձեռքն է թարգմանած զայս եւ զանոնք: Թարգմանութիւնն Է դարու դնել միտեալ եմ. սակայն եթէ զօրաւոր փաստեր յառաջ բերուին կարենան ցուցընելու թէ նոյն իսկ Դաւիթ ուսուցչին ձեռքին ընծայելու է այս թարգմանութիւնը, գրոյս ոճն ու լեզուն այնպէս չեն որ կարենան այն ցուցմանց դէմ դնել հաւասարակշռութեամբ:

§ 31. Ներածութեանս Դաւթի մեկնութեան Հայերէն թարգմանութիւնը պէտք է գործածել յունարէն ձեռագիրներուն լրացման համար, եթէ այս գործքին քննադատական բնագիր մը պատրաստել ձեռնարկուի: Հայերէնը Արիստոտէլի Պերլինի հրատարակութեան Հտր. Դ էջ 16 եւն տպագրուածէն կարճ բնագիր մըն է, ոչ թէ հոծութեամբն, այլ յունարէն բնագրին շատ մասերուն՝ այնպէս ինչպէս ունինք այժմ՝ Հայուն մէջ պակսելովն: Այնպէս որ եթէ յունարէն բնագիրն առնունք այնպէս՝ ինչպէս տպուած է Արիստոտէլի Պերլինի հրատարակութեան մէջ, կը գտնենք որ առաջին բաժնին մէջ կը պակսին հետեւեալք:

Պրանտիսի Ծանօթաբանութիւնք (Brandis Scholia) Արիստոտէլի Պերլինեան հրատարակութիւն, Հտր. Դ.

էջ 16b, 43. — 17a, 4. *κεφάλαια δὲ . . . ἔχουσιν*] կը պակսի:
էջ 17a, 9. *ὁ σκόπος*] կը պակսի:
էջ 17a, 10—16. *καὶ ἔξιν . . . λέγεσθαι*] կը պակսի:
էջ 17a, 19. *εὐλόγως*] կը պակսի:
էջ 17a, 24, 25. *βουλόμενος . . . ἐκεῖ*] կը պակսի:
էջ 17b, 3—5. *ὡς ὅταν . . . ὄνομα*] կը պակսի:
էջ 17b, 19—22. *καὶ γὰρ διὰ… τὸ σύγγραμμα*] կը պակսի:
էջ 17b, 25, 26. *ὥσπερ . . . γινώσκομεν*] կը պակսի:

Այս ամէն օրինակներն՝ որ առնուած են ճառին փոքրիկ տեղէ մը, կը ցուցնեն որ Պրանտիսի բնագիրը ձուլուածք մըն է՝ շատ մ'այլ մեկնութեանց քաղուածոյքներն ի մի կցուած ըլլալով: Վասն զի Հայերէնը մեկնութիւնը յինքեան ամբողջական ըլլալու ամէն երեւոյթն ունի, եւ ի բաց առնլով թերի մասերը՝ յունա-

րէնէ եղած բառ առ բառ տառական թարգմանութիւն մըն է, ճշդիւ նման Սորոգութեանց եւ Ցաղագս Մեկնութեան գրոց թարգմանութեան:

§ 32. Այս գրքիս էջ 1—76 էջերու մէջ գրուած կանխաժամ համեմատութեանց մէջ աստղանիշ մը դրած եմ, ուր կը կասկածէի թէ հայերէն բնագիրը աղաւաղ է: Նաեւ Պորփիւրի համեմատութեան մէջ՝ որ յաջորդ 76—87 էջերը կը գրաւէ, այս աստղանիշները յաճախ գործածելու ստիպուած էի: Պէտք եմ խընդրել ամէն ընթերցողէ՝ որ իմ այս էջերը գործածել ուզէ, զասոնք գործածել՝ ունենալով ի ձեռին յունարէնի այն հրատարակութիւնքն՝ որոնցմով ես գործած եմ: Ապա թէ ոչ այլեւայլ հրատարակչաց ձեռագրաց համեմատութեանց (apparatus criticus) յաճախ յիշատակութիւնք տաղտկալի պիտի երեւան եւ անօգուտ: Իմ նպատակս էր պարզապէս յունարէն բնագրին հնագոյն պատմութեան վրայ լոյս մը սփռել: Սորոգութեանց եւ Ցաղագս Մեկնութեան գրոց նկատմամբ կարելի է հայերէնին միջնորդութեամբ որոշել հաւանականագոյնս Դ. դարու բնագրի մը ճիշդ նկարագիրն այնպէս պայծառ ու ճշգրիտ, իբր թէ նոյն դարու ձեռագիր մ'առջեւնիս ունենայինք:

§ 33. Կնքելով գործքս՝ պէտք եմ յայտնել շնորհակալութեանս շատ մը բարեկամացս որ քաջալերեցին զիս այս աշխատսիրութեանս մէջ: Առաջին եւ գլխաւորն է Ուսուցչապետն

*Մարկոլիութ* (Prof. Margoliouth), *որ նախ յորդորեց զիս սորվիլ Հայերէն եւ ցուցուց ինծի շատ մը գործք՝ զորոնք կատարելու Հայերէնագէտ մը կրնայ նպաստել: Շատ մը Հայազգի բարեկամացս պարտական եմ շնորհակալութիւն. մասնաւոր պարտք մ՚ունիմ Մեծ. Ս. Պարոնեան Վրդ. ի Մանչէսթէր, որ օգնեց ինձ շատ մը տպագրական վրիպակներ ջնջել հանելու: Այս առաջին գիրքն է որ Հայերէն տառերով կը տպագրուի Քլարէնտոնի տպարանը* (Clarendon Press), *եւ տպագրողին համար փաւիայի ձեռագրին ամբողջ բնագիրն օրինակած եմ: Հայերէն բնագիրն սխալներէ զերծ ընելու իմ հոգածութեանս մէջ կը վախնամ թէ շատ անգամ յունարէն կոչմունք զանց առի այնպէս ճշգրիտ ընել՝ ինչպէս որ բուն պէտք էր: Պէտք եմ շնորհակալ ըլլալ Երուսաղէմի եւ Էջմիածնի Հայ վանացն այն յօժարակամութեան համար որով շնորհեցին ինձ մուտ իրենց մատենադարաններուն, եւ այն օգնութեան՝ զոր մատուցին ինձ Հայերէն բնագրին հետ իմ համեմատութիւնքս ընելու համար: փաւիայի Համալսարանի հմտալից մատենադարանապետին յատուկ երախտաւ շնորհակալութիւնքս պարտական եմ այն բարեացակամութեան համար, որով կատարեց իմ բաղձանքս՝ Հայերէն բնագրին այս մի միակ ձեռագիրը Պոտլեան գրատունը խաւրելու, որպէս զի գործածել կարենամ:*

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

---

## ԱՐԻՍՏՈՏԷԼԻ ՅԱՂԱԳՍ ԱՍՏՈՒԾՈՅ

*Հայագէտ հեղինակս արդէն նախընթաց հատածներուն միոյն մէջ (§ 28) ընդարձակ խօսեցաւ Յաղագս Աշխարհի գործքին վրայ, որ Արիստոտէլի անուամբ տպուած է "Դաւթի Անյաղթ„ գործոց մէջ. եւ թէ ինչպէս 1891ի աշնան Էջմիածին գտնուելով գտած է նոյն ճառին թարգմանութեան հնագոյն օրինակ մը որ զերծ է յաջորդ ժամանակի փոփոխութիւններէն: Եւ այս՝ "Յաղագս Աշխարհի„ գրութեան վերջին մասն է՝ թէեւ "Յաղագս Աստուծոյ„ սեպհական տիտղոսը կը կրէ Էջմիածնայ ձեռագրին մէջ. — ("Մայր-Ցուցակի„ մէջ՝ Թ. 2050, գ. "զքանս յԱրիստոտէլէ Յաղագս Աստուծոյ:„) — Հեղինակին այս պատուական հատակոտորն ընդօրինակած ըլլալով՝ խաւրած է այժմ՝ մեզ հրատարակութեան համար, զոր կը դնենք հոս հեղինակին բնական գործոյն մեր թարգմանութենէն իբրեւ Յաւելուած: Հրատարակութեանս մէջ ճշդիւ պահուած է ընդօրինակութիւնն՝ որ նոյնպէս խնամով օրինակուած է ձեռագրէն՝ հանդերձ անոր ամէն սեպհականութեամբք ուղղագրութեան եւ կիտադրութեան: Ձեռագիրն՝ ինչպէս կից յիշատակարանը կը ցուցընէ՝ գրուած է Վանական վարդապետի Ստեփանոս Աղթամարցի աշակերտէն՝ Խոռանաշատ վանաց մէջ ՈՀԲ (= 1223) թուականին: Հրատարակութեանս մէջ մենք աւելցուցինք միայն Վենետիկոյ տպագրութեան (էջ 619, 9—628, 27) տարբեր ընթերցուածքները՝ նշանակելով V., որով աւելի որոշ կը տեսնուին երկուքին շատ տեղ ունեցած կարեւոր տարբերութիւնները: Ձեռագրին սակաւաթիւ սղագրութիւնք (աստուած, -թիւն եւն) ալ պահուած են ճշդիւ:*

Հ. Յ. Տ.

---

*Արիստոտէլի յաղագս Աստուծոյ :*

Արդ նախնի ինչ բան է. եւ Հայրեն. ամենայն մարդկան[՝] իբրու յայ ամենայնի եւ վն այ է[1] առ մեզ հաստատեալ. եւ ոչ մի բնութիւն ինքն ըստ ինքեան բաւեալ լինին: անապատ լինեալ առ՝ ի նմանէ փրկութենէն. վասն որոյ եւ ի նախնեացն ոմանք կանխեցին[2] ասել, թէ այսոքիկ ամենայն ածաւք[3] լի են.[4] որք ի ձեռն աչաց եւ լսելեաց. եւ ամենայն զգա[յ]ութեանց [5]նկարեալ են զածային զաւրութիւն նշանակելով. սակայն ոչ զգոյութիւն.[6] քանզի փրկիչ ճշմարտապէս է[7] ամենայնի եւ ծնաւղ. որ[8] երբ եւ իցէ յաշխարհիս յայսմիկ[9] ընդ նմին կատարեալ լինին ած*. Սակայն ոչ[10] ինքնագործ եւ աշխատաւոր կենդանոյ վաստակ հանդուրժելով. այլ զաւրութբ վարեալ անաշխատ[,]ի ձեռն որոյ եւ հերի գոլ թուեցելոցն հասեալ լինի.

1 V չունի "է:"
2 V կարծեցին:
3 V աստուածայնովք:
4 V այսինքն զի ի ձեռն . . . :
5 V նկատեմք յէսս զաստուածային զօրութեան նշանակ:
6 V զգոյացութիւնն:
7 V փրկիչ է . . . եւ ծնօղ:
8 V ինչեւիցէ:
9 V ի նմանէ կատարեալ լինի յԱստուծոյ:
10 V ինքնագործութեամբ ըստ աշխատաւոր կենդանոյս վաստակով, այլ զօրութեամբ վարէ անաշխատ. ի ձեռն որոյ՝ եւ ի թուելի հեռի գոլ հասեալ լինի:

* Լուսանցքին վրայ. "մէկ իմաստնակոյն արք զփառսն զանքազ դատէլի եւ, սանէին :„

Արդ զվերագոյն[1] եւ զառաջին Հաստատութիւն
նա է ընկալեալ եւ[2] խախան անուանեալ է վասն
այսորիկ ըստ քերդողին[.] ի[3] ծայրագոյն գա-
գաթն ընդ նմին ամենայն երկրի Հաստատեալ.
եւ մանաւանդ[4] ի զաւրութենէ նորա առեալ*
լինի[5] միշտ որ մերձաւորագոյն է. ապա յետ
այնորիկ[6] որ Հետեւին նորին.[7] եւ ըստ կարգի
այնպէս[8] մինչ եւ Հասանէ ի տեղիս յորում
եմք. վասն որ[9] երկիր եւ որ ինչ յերկրի (եւ որ
ինչ յերկրի**) են թուին թէ յոլովագոյն Հե-
րի գոլով յայ աւգտակարութենէն. (աւգտա-
կարութենէն.***) տկարք են եւ անյարմարք.[10]
ըստ որում ընդ ամենայն թափ անցանել բնաւո-
րեալ է աստուածային զաւրութիւնն. եւ առ իրս
որ առ մեղ է[,] նմանապէս[11] պատաՀեալ. եւ
գեր ի վերոյն մեր[.] ըստ Հուպ լինելոյն առ

---

1 V զվերնագոյն:

2 V եւ իշխան անուանեալ լինի ըստ քերթողին
վասն այսօրիկ զի: . . .

3 V զի ի ծայրագոյնն գագաթն կալով՝ ընդ նմա
է ամենայն երկիր Հաստատեալ:

4 V այլ եւ:

5 լինին . . . մերձաւորագոյնն են:

6 V այսօրիկ:

7 V նոցին:

8 V այսպէս:

9 V վասն որոյ:

10 V Եւ ըստ . . :

11 V նմանապէս լինի պատաՀեալ, եւ ի գեր ի վե-
րոյնն մեր. սակայն ըստ . . :

* Նախ "առեալ" գրուած, ապա վրան "ռ" մը գրուած էր:

** Այսպէս կրկին անգամ գրուած էր փակագծերը:

*** Այսպէս կրկին անգամ գրուած:

աստուած գոլ(·) յաւէտ[1] եւ նուազ[2] աւգտակարութեան հաղորդի. Արդ լաւագոյն է կարծել զոր[3] եւ աստուծոյ մանաւանդ[4] վայելէ յարմարել.[5] իբրու յերկինս: Սերտեալ. զաւրութիւն. եւ այնոցիկ որ յոլովագոյն հեռացեալ են[6] միոյ իսկ եւ ընդ նմին ամենայնի պատճառ լինեալ փրկութե մանաւանդ կամ իբրու ընդ թափ անցանելով. եւ հասանելով[7] ուր գեղեցիկ ոչ է, եւ ոչ բարեձեւ:[8] Ինքնին գործել զոր առ երկրի են. քանզի այս ինչ ոչ մարդկան իշխանաց պատշաճ է՝ զինչ եւ իցէ գործոյ[9] ի վերայ հասանել: Եւ զոր ինչ ասեմս այսպիսի ինչ.[10] իբրու թէ իշխան քաղաքի կամ զօրաց կամ տան մեծի՝ անկողնի կարասիս հաւաքէ, կամ այլ ինչ նուաստագոյն գործս կատարէ, զոր[11] հանդիպեալ ախմար ծառայն առնել բաւական իցէ. այլ իբրու[12] յաղագս մեծի թագաւորին[13] պատմել Կամբիւսոսի եւ Քերքսի[14] եւ

---

1 V յաւէտ գոլ:
2 V օգտակարն հաղորդութիւն:
3 V զի:
4 V չ—նէ:
5 V . . յարմարել զերկինս, ուր եւ սերտեալ է նորա զօրութիւնն: Իսկ եւ այնոցիկ:
6 V միանգամայն ընդ նոցին լինի պատճառ փրկութեան, կամ իբրու ընդ թափ . . . :
7 V եւ կամ մանաւանդ հափանելով:
8 V Առաջին պատճառն զաշխարհն ինքնին գործեալ, եւ զոր առ երկրի են՝ ունի զօրութեամբ, եւ ոչ բնութեամբ հպեալ. քանզի այս ինչ եւ ոչ մարդկան . . . :
9 V զինչ եւ է գործոյ:
10 V . . . ինչ է:
11 V զոր եւ:
12 V որպէս:
13 V թագաւորացն պատմեն:
14 V Քսերքսի:

Դարեհի [1] զձեւն ի պարկեշտագոյնն եւ ի գերունակ բարձրութի մեծ վայելչապէս զարդարեալ ունելով քանզի սոքա իբրու հետեւեալ լի ունելով, հաստատեալ էին ի սուսք կամ յեքբատանս,[2] որ ամենայնի էին տեսանելի.[3] սխրալի ունելով[4] հաստատեալ տունս եւ պասխապս ոսկիով եւ ելեքտրուխոնիւ եւ փղոսկրիւ պայծառացեալ եւ դրունս ունելով բազումս: եւ շարունակ դրունք գործեալ. ապարխաւք չափեալք ի միմեանց ամրացեալ դրամբ պղնձի մեծագունիւք փութապէս,[5] եւ արտաք սոցունց որք առաջինք եւ ընդրեալք զարդարեալ լինէին. ոմանք շուրջ զթագաւորաւն պահապանք եւ պաշտաւնեայք եւ ոմանք իւրաքանչիւր ապարանի[6] պահապանք որք ասին[7] դրընապանք եւ ունկնալուրք,[8] իբրու զի այսպէս թագաւորն. տր̅ եւ ա̅ծ անուանեալ զամենայն ինչ տեսեալ լինի[9] եւ զատ ի սոցունց. այլք լինին կարգեալ. շահից շտեմարանապետք, եւ զօրա-

---

[1] զի զձեւն պարկեշտագոյն ի գերունակ բարձրութեան մեծավայելչապէս ունելով զարդարեալ, որպէս պատմէ բանն, նստելով ի Սուսք:

[2] V յԷքբատանս:

[3] V չ—նէ “որ . . . տեսանելի:„

[4] V [սխրալի ունելով տունս՝ հաստատեալ ոսկի պարապօք եւ ելեքտրոխոնիւ եւ փղոսկրեաւ պայծառացեալ, դրունս ունելով դրանդեօք պնտեալ եւ ամրացեալ ընդ դրամբքն պղնձօք մեծագունիւ փութով, ապարխաց չափովք հեռացեալք ի խոնարհագունիցն բնակութենէ:

[5] V Եւ այսպէս յառաջին եւ ի վեհագոյն տեղն զետեղեալ նոցա, ի ծառայիցն ոմանք շուրջ . . . :

[6] V ոմանք ապարանիցն:

[7] V որ անուանեալ լինին:

[8] V ունկնդիրք. որպէս զի ի ձեռն սոցա թագաւորն զամենայն ինչ տեսանէ եւ լսէ:

[9] V Ցեա որոց լինին կարգեալք եւ շահուց . . . :

վարք քաղաքաց, եւ որսից ձրից ընդունակք եւ այլոց գործոցն խրաքանչիւրոցն[1] փութարարք. [2] եւ ընդ նմին ամենայն իշխանութիւն գոյացութեան կատարեալ լինիւր: առ մուտս արեւ[3] մինչեւ յԵլլեսպոնտոս,[4] եւ առ ելս արեւուն մինչեւ ի Հնդիկս եւ ազգն ըմբռնեալ լինէին ի ձեռն զօրաւորացն[5] եւ պետաց մեծի թագաւորի.[6] որոց Հպատակէին տուընչենագնացք* եւ դեսք եւ պատգամաւորքք եւ պաՀարարքն փոխատրութեամբ Հրապարակելով միմեանց ի ծագաց իշխանութեան մինչեւ ցուսք եւ յԵքբատանք. [7] իբրու զի թագաւորն գիտացեալ լինէր միաւրեա նորագործեալսն յամենայն յԱսիա: Արդ պարտ է Համարել զմեծ թագաւորի[8] զարտաւնութիւն առ աշխարՀակալն աստուծոյն նըւազագոյն, որչափ քան [9] զնորին միոյ ընչին

---

[1] V այլոց գործոց խրաքանչիւրոց պիտոյից փութարարք:

[2] V որովք ամենայն իշխանութիւնն կատարեալ լինի: (Տես վերը՝ § 28, էջ 62:)

[3] V արեւու:

[4] V ցԵլլեսպոնտոս . . . ցՀնդիկս՝ ազգ ըմբռնեալ լինին:

[5] V զօրավարաց:

[6] V որում եւ Հպատակեն պատգամաւորքքն ընթացիցն փոխատրութեամբք ի տուընջեան եւ ի գիշերի ժամուց՝ Հրատարակելով . . . ցԵքպատանք:

[7] V իբր զի թագաւորն գիտացէ ի մի օրն զնոր գործեցեալսն յԱսիա:

[8] V թագաւորիս այսորիկ:

[9] V քան զնա մի ինչ ընչին եւ թարմատար ի կենդանեաց:

* Նախ գրուած էր "տուընջեան ագնացք", յետոյ սրբագրուած "տուընջեանագնացք", իսկ ի լուսանցս ապա ուղղուած՝ "տուընջենագնացք":

եւ Թարմատար է ի կենդանեացս: [1]Իբրու զի Թե անպարկեշտ էր զնոյն իսկ կարծել զՔերքսէս ինքնին գործ կատարել զոր եւ իցէ՝ անձամբ ի վերայ հասանելով եւ մատակարարելով,[2] որչափ մանաւանդ անվայելուչ իցէ[3] Աստուծոյ այս ինչ: Այլ պարկեշտագոյն է եւ վայելչագոյն, կալ եւ մնալ Նորին ի վայրին վերնագունն[4] եւ զօրութիւն Նորա ընդ ամենայն աշխարհ Թափ անցանել[5] զարեգակն ընդրել եւ զլուսին, եւ ամենայն երկրի շրջաբերութեանն պատճառ լինելով եւ փրկութեան, որ յերկրի են:[6] Քանզի ոչ հնարից կարաւտանայ եւարքանեկութեան[*] առ ի յայլոց ումանց, որպէս առ մեզ իշխանութիս պէտս ունին. յոքնաձեռնութե վասն ներդոյ[7] տկարութե, այլ աստուածայնագոյն եւ[8] կարաւղ զաւրութիւն ի ձեռն պարզ շարժութեան պէսպէս տեսակս կատարէ, որպէս արարեալ լինին մեծ արհեստքն ի ձեռն միոյ գործարանի, զորս սքաստերի[9] անուանեն. բազումն եւ զանազանս ի բաց[10] կատարեն ներգործութիւնս. Նոյնպէս եւ լարախոյքն մի

---

[1] V Եւ որպէս անպարկեշտ էր կարծել զնոյն իսկ զՔսերքսէս ինքնին զգործն կատարել զինչեւիցէ:

[2] V հասեալ եւ մատակարարեալ, ապա որչափ . . .

[3] V է:

[4] V կալ մնալ Նմա ի վերնագոյնն վայրի:

[5] V անցանելով՝ զարեգակն վարել:

[6] V լինել եւ փրկութիւն, որոց յերկրի են:

[7] V ներդոյ սոցունց տկարութեանց:

[8] V չ—նէ:

[9] V զոր սքաստերի է:

[10] V իրաց:

* Բառիս -եան վերջաւորութիւնը չակերտի մէջ առնուած էր ընդօրինակութեան մէջ:

*թել խրելով[1] ի լարիցն՝ շարժեցուցանեն զկենդանոյն զպարանոցն եւ զձեռսն ուսաւքն. այլ պատճառ է այսր իրի, զի ամենայն մասունք առ միմեանս ոմն[2] քաջայարմարութեամբ են շարակացեալ:[3]*

*Արդ այսպէս եւ աստուածային բնութիւն ի պարզէ ումեմնէ եւ յառաջին շարժութէ՝ զզաւրութիւն տուեալ լինի[4] ի շարակացեալսն եւ[5] յայսմանէ դարձեալ ի հեռագոյնսն մին եւ[6] ընդ ամենայն անցեալ լինի. քանզի շարժեալ մի ի միոջէ, եւ նոյն դարձեալ զմիւսն շարժէ զարդարմամբ առնելով[7] ամենիցուն ընդանեբար իւրեանց կազմութեց: Ոչ նորին ճանապարհին ամենեցուն գոլով, այլ զանազան. է որոց[8] եւ ներհական.[9] եւ մանաւանդ առաջին շաղկապին առ ի շարժութի միւսոյն լինելով. իբրու թէ անաւթէ[10] միոյ ընկեցեալ լինի գունդ եւ քուէ, եւ երկարագունդ[11] եւ գլան զի իւրաքանչիւր[12] ի սոցունց. ըստ իւրոյ ձեւին շարժեալ լինիցի. կամ եթէ կենդանիք ոմանք ջրային եւ ոմանք ցամաքին[13] եւ թեւաւորս ի ծոց ունելով*

---

1 V *մին թելք խլելով:*
2 V *առ իրեարս իւիք քաջայարմարութեամբ . . .:*
3 V *շարակացեալ:*
4 V *լ—է տայ:*
5 V *նախ ի մերձաւորսն, եւ յայնցանէ դարձեալ:*
6 V *մինչեւ:*
7 V *զարդարուն եղեալ նովաւ ամենեցուն ըստ ընտանեբար . . . կազմութեանցն:*
8 V *չ—նի:*
9 V *ներհակ. մանաւանդ:*
10 V *յանօթէ մինչ ընկեցեալ:*
11 V *երկայն գունդ:*
12 V *իւրաքանչիւր ոք:*
13 V *ցամաքայնս եւ օդային ի ծոց ունելով ոք արտաքս հանիցէ:*

արտաքս հանէ, յայտ է թէ լուղականն յիւրն լուղացեալ[1] լինի յապարանս, եւ ցամաքայինն եռացեալ, իսկ աւդաւինն[2] վերացեալ յերկրէ ի յաւտս[3] միջէ. միոյ առաջին պատճառին հաւտուցանելով ամենեցուն իւրաքանչիւրումն զիւր պատշաճութիւն։

Այսպէս եւ առ աշխարհաւ. քանզի ի ձեռն ընդ նմին ամենայն երկնի շրջաբերութեան[4] պարզաբար տուրվաւ եւ գիշերաւ աւարտելով, այլոց ամենեցունց լինեալ լինին գնացքն. եւ մանաւանդ ընդ միով գնդաւ պարունակելոցն, ոմանց երագագոյն եւ ոմանց հեղգագոյն շարժելով, ըստ ասպարիսին[5] յերկայրութեան։ Քանզի լուսին զիւր բոլորն յամսումն[6] լինի կատարեալ. աճելովն իսկ եւ նուազելով. եւ արեգակն ի տարին. եւ սորա զուգընթացքն[7] Լուսաբերն, եւ Հերմեսի ասացեալն։ Իսկ Հրատն ի կրկնապատիկ ժամանակին, եւ Արամազդայն[8] ի կէս. եւ վեշապատիկ ստորնայւոյ իւրոյ։ [9]Այլ մի ամենեցուն յաւդաւորութիւն երգակցեալ պարելով. ըստ երկնի. ի մի լինեալ լինի եւ ի նմին յանդի, զարդարումն ընդ նմին ամենայն,

---

1 V լօղականն յիւրն լէղացեալ . . ապարանս։
2 V օդայինն։
3 V յօդս . . . զիւրն . . ։
4 V շրջաբերութեամբն . . տըւով եւ գիշերով։
5 V ասպարիսացն երկայնութեան։
6 V յամսեանն։
7 V զուգընթաց։
8 V Արամազդայն . . . ստորացւոյ . . ։
9 V տպագ. Այլ մի ամենեցուն յօդաւորութիւն լեալ լինի եւ ի մին յանդի, զարդարումն ընդ նմին ամենայն, այլ ոչ անզարդութիւն անուանելով։

ոչ անզարդութիւն անուանելով: Այլ որպէս ի[1] պարապետին սկսանելով. ընդ նմին մակահնչէ[2] պարն ամենայն. արանց համանգամայն եւ կանանց. զանազանաձայնիւք ստորնագունիւք[3] եւ ծանրագունիւք ի մի յաւդաւոր[4] ներդաշնակապէս խառնելով, այսպէս լինի եւ առ այնմ.[5] որ ընդ նմին զամենայն տնաւրինէ ծյն: [6]Քանզի ըստ վերուստ. ներողութեանն այնմ որ բեր. անունապէս. պարապատ եղեւ առ սասացեալ շարժեալ լինին աստեղքդ, եւ ընդ նմին ամենայն երկին գնացեալ լինի[7] (ամենայն երկին*) զիւրսն գնացսն:[8] Եւ ամենափայլ արեգակն զտիւն եւ զգիշերն սահմանանելով,[9] եւ լանելով եւ մտանելով, եւ ըստ քառեակն[10] աճելով տարոյն, յառաջ զեռալով հիւսիսային[11] եւ յետ զեռալով հարաւային[12] լինի. եւ անձրեւք եւ հողմք,[13] եւ ցաւղք եւ կիրք ի պարունակեալ զամենայն պահելով. վասն առաջնոյն եւ

---

[1] V որպէս ի պարու պարապետին . . . :

[2] V ըսէ հնչէ :

[3] V զանազան ձայնիւք սրագունիւք . . . :

[4] V յօդաւորութիւն :

[5] V եւ առ այնմ Աստուծոյ՝ որ ընդ իւրեւ զամենայն տնօրինէ: Քանզի . . . :

[6] V Քանզի ի վերուստ ներողութեամբն, նա բարերարութեամբն պարապետ եղեւ աստցեղոցս, որով շարժեալք . . . :

[7] V լինին :

[8] V զիւրն գնացս :

[9] V սահմանելով :

[10] V քառեկին . . . զտարին :

[11] V հիւսիսայինն :

[12] V հարաւայինն, լինին անձրեւք . . :

[13] V հողմք, ցօղք ի պարունակեալն ամենայն պահելով ընդ առաջնումն . . . :

* Այսպէս կրկին անգամ գրուած էին այս բառերը:

սկզբնածին պատճառի[1] հետեւեալ լինին[2] եւ աստեղաց եւ գետոց ելս եւ ծովու վերստին ուռուցմունք, ծառոց ցցութիւնք, պտղոց ժամամունք,[3] ծնունդք կենդանեաց եւ սնունդք. ամենեցուն աճմունք եւ հաստատմունք եւ ապականութիւնք եւ[4] գործակից լինելով առ այսոսիկ եւ իւրաքանչիւրոցն կազմութե̃,[5] որպէս ասացի:

Արդ յորժամ ամենեցուն իշխանն իսկ եւ ծնաւղն աներեւան[6] գոլով այլոց բայց ի մտաց նշանակէ ամենայն բնութեան բերեալ լինի. ի մէջ երկնի եւ երկրի, եւ շարժեալ լինի[7] փութապէս բոլորիւք[8] յատուկ եւ ծագաւք. եւ երբեմն աներեւան լինելով եւ երբեմն երեւեցուցանելով,[9] եւ դարձեալ թագուցանելով.[10] ի միոյ սկզբանէ. Այլ յոյժ թուեցեալ լինի այս ինչ լինելով.[11] յայսոսիկ որ առ պատերազմունսն լինին, յորժամ փողն նշանակէ զաւրաւարին. քանզի յայնժամ զձայնն իւրաքանչիւրոք լուեալ ոմն զվահանն ընմռնէ,[12] եւ ոմն զսուսերն, եւ

---

1 V պատճառու: Հետեւեալ . . .:

2 V Հետեւեալ լինին աստեղաց եւ գետոց յարուցմունք եւ ծովու . . .:

3 V ժամանմունք:

4 V չ—նէ:

5 V կազմութիւն, որպէս եւ . . .:

6 V անհասան ամենայնի՝ բաց ի մտաց կամի, շարժէ զամենայն բնութիւնս, որ բերեալ լինին . . .:

7 V լինին:

8 V բոլորովին յատուկք՝ որք են ընդ ծագս, երբեմն աներեւակ . . .:

9 V երեւելապէս:

10 V եւ այս լինի ի միոյ . . .:

11 V լինել յայնոսիկ:

12 V ըմբռնէ:

միւսն զաղաւարտն, եւ այլ ումն զերկվարն սան-
ձէ, եւ միւսն ի կառսն եղանէ, եւ այլ ումն զգրաւշն
եւ զնշանական վարէ եւ հաստատէ վաղվաղակի
տասնապետն զտասնակն իւր, եւ դասապետն
զդասն կազմէ: Իսկ մակաձիք ռազմին եւ սոսկքն
յիւրեանց վայրն ընթանան, եւ ամենայն ընդ
միով նշանաւորով դրօշեալ լինին, հրամանաւ
զկալաւղութիւն ունաւղ իշխանին:

Այսպէս պարտ է խորհել յաղագս ընդ
նմին ամենայնի. քանզի ընդ միով կամաւ[1] ար-
կեալ ամենայն լինեալ լինին՝[2] զոր ինչ իւրաքան-
չիւրում է յատուկ, եւ նորին անտես գոլով եւ
աներեւոյթ՝ որ բնաւ[3] ոչ է արգել. ոչ շարժէ
առ ի մտածութի զմեզ թերահաւատութե:
Քանզի եւ հոգին,[4] ի ձեռն որոյ կեցեալ եմք[5]
եւ տունք ունիմք. եւ քաղաք. Սա անտես գոլով
գործովք իւրովք տեսեալ լինի. քանզի ամենայն
կենցաղոյ զարդարումն ի ձեռն նորին եղեւ գտեալ:[6]
եւ կարգաւորեալ. եւ շարունակեալ: երկրի
մշակումն[7] եւ տնկումն աւրինաց զարդարումն,
եւ քաղաքավարութեան հանդիսաւոր գործք.
գերասահման պատերազմ. եւ խաղաղութիւն:

Զայսոսիկ պարտ է եւ յաղագս ա̃ծոյ

---

1 V կամօք:

2 V լինի ըստ իւրաքանչիւր ընթացիցն յատուկ . . .:

3 V որ զբնաւն ունի, եւ ոչ է պարտ շարժել զմեզ առ ի մտածութիւն թերահաւատութեան:

4 V հոգի:

5 V կեամք եւ տունս ունիմք եւ քաղաք՝ անտես գոլով, ի ձեռն գործոյ իւրոց . . .:

6 V գտեալ լինի:

7 V երկիր ի մշակումն եւ ի տնկումն, արհեստիւ մտածութեանց օրինաց զարդարումն, եւ քաղաքավարութիւն հանդիսաւոր, գործք գերասահման . . .:

զմտաւ ածել, զաւրութեամբ իսկ գոլով նորա[1] զաւրեղագոյն, գեղեցկութե՛ վայելչագոյն, կենդանութե՛ անմահ. առաքինութե՛ առատագոյն. քանզի ամենայն մահկանացու բնութեան անդէս գոլով, ի նոցունց գործոց[2] տեսեալ լինի: Քանզի [3]կիրքն եւ որ ի ձեռն աւդոյ են ամենայն եւ որ ինչ ի վերայ երկրի եւ որ ինչ ի ջուրս են, գործք աստուծոյ գոլ ճշմարտապէս ասացեալ լինին, այնմ որ զաշխարհ աւարտեալ է, եւ շարունակէ ըստ բնականին Եմպետոկլեայ ամենայն.[4] որ էրն եւ էս եւ որ իցէ[5] յետոյ. ծառք բուսեալք, եւ արք եւ կանայք, գազանք եւ էշք իսկ եւ ի ջուրս սնուցեալ[6] ձկունք: Այլ նմանէ ճշմարտապէս, թէպէտ եւ փոքր է[7] նմանեցուցանելն, ի քարինսն որ պորտս անուանին, եւ գրեալ լինին ի մէջս կարակնից, եւ ի մէջ կալով երկաքանչիւր[8] մասանցն, շաղկապմամբն յարմարեալ[9] եւ ի կարգի պահէ զամենայն զձեւն[10] կարակնին. եւ անշարժ: Այլ ասեն թէ[11] պատկերագործն Փիդիա, կազմելով զԱթենայ՝ որ ի ծայրաքաղաքն է՝ ի մէջ վահանի նորին. զդէմ անձին իւրոյ յաւրինեաց. եւ այն-

---

[1] V նորին:
[2] V ի գործոց իւրոց:
[3] V Քանզի երկին եւ որ դեր ի վերոյ քան զօդդ, ամենայն ինչ, եւ որ ի վերայ երկրի . . . :
[4] V զամենայն:
[5] V իցեն:
[6] V բուծեալ:
[7] V իցէ:
[8] V իւրաքանչիւր:
[9] V յարմարէ:
[10] V զձեւ կարակնին անշարժ:
[11] V թէ եւ . . . :

*պէս շաղկապեաց ընդ պատկերին[1] ի ձեռն ումեմն աներեւան արարչագործութեան. իբրու թէ ի հարկէ թէ[2] կամեցի ոք խլել զայն ինչ, ընդ նմին զամենայն[3] պատկերն քակեալ լինի,[4] քանզի նովաւ լինի շարունակեալ:*

*Արդ այս[5] աւրինակաւս [6]մեծ աշխարհէս շարունակելով, զբոլորից զաւդաւորութիւն եւ զփրկութիւն ոչ ի միջիս գոլով, ուր հող է եւ տղմատեսակ տեղի,[7] այլ ի վերն ի մաքուրն ի մաքուր[*] վայրի հաստատեալ, զոր ստուգապէս երկին կոչեմք, առ[8] սահման վերնոյն զնոյն գոլով[9] Օլիմպոս՝ վասն բոլորափայլ գոլոյն, եւ յանամենայն միջէ[10] եւ յանկարգ շարժութենէ մեկնեալ լինելոյն. [11]որպէս եւ առ մեզ լեալ լինին[12] ի ձեռն ձմերանց եւ հողմոց բռնութեանց, որպէս ասէ եւ Հոմերոս: Այլ Ալլիմպոս՝[13] զոր ասեն աստուածոցն վայր. զդուշագոյն գոլ, ոչ հողմովք թաւթափեալ լինի, ոչ երբեք անձրեւաւք խոնաւացեալ, ոչ ձեաւմբ խառնակեալ, այլ յաւէտ պարզ է: Այլ վկայէ եւ կենցաղս ամե-*

---

[1] V պատկերին յօրինուած ինչ ի ձեռն ումեմն . .
[2] V չունի, եւ “կամեցի:„
[3] V քակեալ:
[4] V լինէր:
[5] V այսու:
[6] V աշխարհ յԱստուած է շարունակեալ, որ բոլորից է յօդաւորութիւն եւ փրկութիւն:
[7] V տեղիս, այլ ի վերին մաքուր վայրն . . . :
[8] V առ ի սահման:
[9] V գոլ. եւ Օլիմպոս:
[10] V միգէ:
[11] V ըստ որում:
[12] V լինի:
[13] V Օլիմպոս:
[*] Բառն այսպէս կրկնուած էր:

նայն զվերին վայրն տուեալ Աստուծոյ. քանզի ամենայն մարդիկ խղճք ունելով.[1] զձեռս յերկինս վերաձգեն, ըստ որում բանի[2] եւ ոչ չարաչար այն ինչ վերաձայնեալ եղեւ:

Այլ եւ սա[3] եհաս յերկին անդորր · վայրի*. առ[4] եթերն եւ ամպս վասն որոյ եւ ի զգալեացս պատուականագոյնքն յայնմիկ սկա-կային[5] տեղւոջ. աստեղք եւ արեգակն եւ լուսին: Վասն որոյ եւ միայն երկնային[6] զմիշտ կեցեալ. դասուեթի առեալ զարդարեալ լինին, եւ ոչ երբեք այլայլեալք եւ փոխաշարժեալք եղեն որպէս որ ինչ յերկրի[7] են. դիւրափոփոխք գոլով. բազում այլայլութեանց ընդունակք[8] եղեն: Քանզի բնաւոր[9] շարժութիք զբազում մասունք[10] երկրի ի վեր պատառեցին, եւ անձրեւք ողողեցին[11]. յանկարծակի հոսեալք եւ մակընթաց կոհակաց եւ տեղատուիք զքաղաքս. եւ զցամաքս[12] ծովացուցին, եւ զծով ցամաքեցուցին. Եւ բռնութիւնք ուռուցիկ հողմոց

[1] V մարդիկ խղճս:
[2] V ըստ որում բանի ոչ անպատշաճ եւ այն ինչ վերաձայնեալ եղեւ:
[3] V Զեւսայ . . . երկին:
[4] V առ որով եթերն եւ ամպք . . .:
[5] V մակակացին ի տեղւոջ:
[6] V երկնային դասք զմշտակայութիւն առեալ զարդարեցան . . .:
[7] V յերկրիս . . . դիւրափոփոխ:
[8] V ընդունակ, ——նց եղեն քայլ:
[9] V բանաւոր:
[10] V մասունս:
[11] V անձրեւք յանկարծակի հոսեալ ողողեցին, եւ կոհակաց մակընթացութիւնք . . .:
[12] V զցամաքն:

* "Վայրի" բառը փակագծի մէջ առնուած էր ընդօրինակութեան մէջ:

է յորժամ զբոլոր քաղաքս դղրդեցին,[1] եւ հրկիզութիւնք եւ բոցք ոմանք[2] ի յերկնից հեղեալ[3] յառաջագոյն որպէս ասեն առ Փայթոնաւ, զարեւելեան կողմն բոցակիցեաց.[4] եւ ոմանք յարեւմտեան կողմն.[5] յերկրէ ի վեր բխեալ, որպէս յետնե[6] խառնելեացն ի վեր պատառելով, եւ առ երկրաւ բերելով աւրինակաւ ջրոյ.[7] յորում[8] զբարեպաշտիցն սէր. պատուեաց պատահեալն անդ բաստ.[9] քանզի շուրջանակի ըմբռնեալ ի հոսմանէն[10] հրոյն վասն զի բերեալ առ ուս իւր զծերացեալ ծնաւղն փրկեալ լինէր.[11] քանզի մերձ[12] նոցունց լինելով գետ հրոյն հանդիպեալ լինէր նորա. յայսկոյս եւ յայնկոյս:

Եւ ընդհանուր բանիւ՝ զոր ինչ[13] ի նաւի նաւավարն է եւ ի կառս կառավարն, եւ պարու[14] պարապետն, եւ ի քաղաքի քաղաք[15] աւրէնն, եւ առ զաւրս զաւրավարն, զայս ինչ եւ ած յաշխարհի է. սակայն ըստ որում չափու աշխատաւոր է[16] իշխելն. եւ բազմաշարժ եւ

[1] V դրդուեցին, եւ հրակիզութիւնք . . . :
[2] V չունի:
[3] V որպէս ասեն առ փայթոնաւ յառաջագոյն:
[4] V բոցակիզեաց:
[5] V կողմն:
[6] V ի յետնէ:
[7] V եւ օրինակաւ ջրոյ առ երկրաւ բերելով:
[8] V յորում եւ . . . :
[9] V բախտ:
[10] V հոսումն հրոյն ի վայր բերեալ, ընդ առնուլ յուս իւր . . . :
[11] V փրկել ի նմանէ:
[12] V մերձ լեալ նոցայ ի գետ հրոյն, հերձեալ լինէր յայսկոյս եւ յայնկոյս:
[13] V չունի:
[14] V ի պարու:
[15] V չունի քաղաք:
[16] V աշխատանօք եւ . . . :

բազմացնոր. իսկ նորայն եւ անտրտում եւ անաշխատ[1] մեկնեալ յամենայն[2] տկարութենէ։ Քանզի անշարժ սերտեալ զաւրութեամբ՝ զամենայն շարժէ եւ պար ածէ [3]ուր եւ կամեցեալ լինի զանազան տեսակաւք եւ բնութ̃. որպէս [4]պղերկեայ. եւ աւրէն քաղաքի անշարժ գոլով ի վարելոցն[5] նովաւ յանցինսն զամենայն ինչ տնաւրինէ ըստ քաղաքավարութեան. քանզի յայտ է թե հետեւ[6] նմա՝ ելանեն իշխանք յիշխանութիքն[7] եւ խորհրդածուքն եւ[8] եկեղեցուցիչքն ի ժողովուրդարանքն[9] որ պատշուճեցուցէ սոցա եւ ոմն ի պահանջարանն ընթանան, զի հաստուցանէ եւ ոմն[10] առ դատաւորսն զի տացէ պատասխանի։[11] Արդ լեալ լինին եւ հանդիսաճայութ̃ք աւրինաւորք, եւ կացուրդք տարեկանք, եւ աստուածոյն զոհք, եւ դիւցազանց հաճութ̃ք, եւ յիշատակք մահացուցելոցն[12] եւ այլ[13] իրս այլոց ներգործեալս ըստ միում հրա-

---

[1] V իսկ նորայն անաշխատ եւ անտրտում եւ մեկնեալ . . . ։

[2] V յամենայն մարմնական . . . ։

[3] V պարածածկէ. որ եւ կամեցեալ՝ լինին զանազան տեսակք եւ բնութիւնք։

[4] V չունի "պղերկեայ. եւ։"

[5] V ի վարելոցն նովաւ անշարժ գոլով՝ տնօրինէ յանձինսն . . . ։

[6] V հետեւելով նմա՝ ելանեն . . . ։

[7] V յիշխանութիւնսն։

[8] V չունի։

[9] V ի ժողովրդարանսն. ի սոցանէ պատշաճի ումեմն ի պահանջարանն ընթանալ։

[10] V ումեմն . . . դատաւորն։

[11] V Այլ լեալ լինի անտի եւ ճաշք օրինաւորք . . . ։

[12] V մահացելոց։

[13] V եւ իրս այլ ներգործեալս ըստ իւրումն հրամանի եւ օրինական իշխանութեան ի յոյժ պահողաց զկամս օրինացն։

մանի կամ աւրինական իշխանութեամբ ողջպա-
հէ զկամս արարողին.[1] իսկ եւ այլ քաղաքք
համանգամայն լի են խնկաւք[2] եւ համանգամայն
աւրհնութք̃. եւ հեծութք̃. այնպէս եւ կարծե-
լի է առ մեծի քաղաքիս, ասացից արդեւք, թե
եւ աշխարհիս.[3] քանզի աւրէնք մեր մի է ած̃,
ոչ եւ մի ընդունելով ուղղութիւն եւ ոչ փո-
փոխումն, այլ վեհագոյն է եւ հաստատուն ի
վարչութեան. եւ նորին առաջնորդելով[4] ներ-
դաշնակապէս, ընդ նմին ամենայն տնաւրինեալ
լինի աշխարհ,[5] երկնի եւ երկրի բաժանելով
զբնութեանց ամենայն սերմանեանց եւ տնկոց եւ
կենդանեացն ըստ ազգի եւ ըստ տեսակի: Քան-
զի որթք եւ արմաննենիք[6] եւ թզենիք եւ ձի-
թենիք, որպէս ասէ քերթողն, պտղովն են պի-
տանացու. իսկ այլ անպտուղքն[7] կատարեն,
մայրք եւ տաւսախք, սոճիք եւ նոճիք. եւ այլ[8]
են պտղատուք պտղոց քաղցունք, սակայն ոչ
ըշտեմարանելոցն.[9] իբրու տանձիք եւ նեռնե-
նիք գեղեցկապտուղք:[10] եւ ի կենդանեաց վայ-
րենիք իսկ եւ ընդանիք, որք ի յաւտի են եւ

---

1 V ի սմանէ քաղաքք միանգամայն:

2 V խնկօք եւ այլ ամենայն գոյիւք: Այսպէս կար-ծելի է եւ . . . :

3 V աշխարհի:

4 V առաջնորդելովն:

5 V երկին եւ երկիր, ուր բաժանեալ լինի բնու-թիւն ամենայն սերմանց, անկոց . . . :

6 V արմաւենիք, թզենիք . . . :

7 V անպտուղքն զայլ պէտս կատարեն:

8 V այլք:

9 V ըշտեմարանին:

10 V իբրու զտանձիս եւ զնռնենիս գեղեցկապտուղս

յերկրի եւ ի ծովու ճարակեալ լինի[1] եւ աճեալ եւ ապականեալ, անսալով իւ̃յ աւրինացն: քանզի ամենայն զեռուն գանիվ[2] ճարակքեալ, որպէս ասէ եւ[3] Հերակլիտոս. Այլ մի գոլով բազմանուն է ըստ կրիցն ամենայնի անուանելով,[4] զոր մեք Նորոգմասունս[5] անուանեմք: Կոչեմք զնա Ջենա եւ Գիս.[6] յարանունապէս վարելով անուամբ,[7] իբրու թէ ասացեալք լինիմք՝ թէ վասն նորա կեալ լինիմք[8] ի ժամանակի. քանզի եւ նա ժամանակէա[9] լինի. ասացեալ [լի] հետեւ հետեւելով ի յաւիտենէ ի միւս եւ յաւիտեան*, եւ աստրոպէոս եւ պրանտէոս[10] եւ եթէրիոս եւ կերաւնիոս եւ իւվետիոս յիւետիյն[11] որ են անձրեւք, լինին անձրեւայինք եւ ի կերաւնիցն, որ են ամպահարութի[12] ասի ամպահարաւղ. եւ յայլոց ասացեալ[13] որպէս լինի[14] թարգմանեալ. սակայն եպիկաւրպիոս[15] ասա-

---

1 V լինին:
2 V հողով ճարակի:
3 V չ—նէ:
4 V յամենեցունց անուանեալ:
5 V Նորոգմունս:
6 V Ջինա եւ Գիա:
7 V անուամբքն:
8 V չ̃ք կեամք:
9 V ժամանակ է. լինի ասացեալ ըստ հետեւման՝ եւ յաւիտեան, ընդ որով եւ յաւիտենականք:
10 V պրունտէոս:
11 V իւվետիոս յիւիտիցն:
12 V ամպահարութիւնք:
13 V . . ասացեալ անուանցս:
14 V լինին:
15 V եպիկարպիոս ասացեալ, որ է . . . :

* Ցաջորդ քանի մը տող յունական բառերով լի կտորը Վենետիկոյ տպագրութեան մէջ դրուած է ի ծանօթութեան. (տես էջ 627, ծան. 1:)

ցեալ լինի որ է մակապատուղ. վն պտղոցն որ առեալ լինին ի քաղաքացն. եւ գենեթլիս. վն ծննդոցն. եւ երկլիս վն հաստատմանցն. եւ ամաւգինոս[1] վն կցորդութեցն. եւ հաղորդութեցն ամենեցուն ընդ հոմասերս. եւ եռերիոս եւ փիլիոս եւ ստորատիոս[2] եւ տրոփպեւոս եւ կաթարսիոս եւ պաղամնէոս եւ իկեսիոս եւ մելիքէոս-որպէս քերթողքն ասեն,[3] փրկիչ եւ աղատիչ պատրաստապէս: Եւ զի ամենայն ընդ մի ասացից՝ երկնային իսկ եւ երկրային, ամենայն բնութե եւ բախտի մականուն գոլով որպէս եւ պատճառ է[4] ամենեցուն: Վասն որոյ եւ յերկն[5] Որփիական ոչ անպատշաճ լինի ասացեալ, Զեւս առաջին, Զեւս յետին, արգիկերաւնոսն[6] Զեւս թագաւոր, Զեւս հիմն երկրի եւ աստղաւոր[7] երկնի, Զեւս արեգակն եւ լուսին, Զեւս իշխան ամենից արգիկերաւնոս: Քանզի զամենայն թագուցեալ դարձեալ[8] ի լոյս յոյժ սիրեցեալ խառնէ. ի սրտէ իւրմէ փոյթ նոցունց արարեալ այլ կամ եւ կարիս ոչ այլ ինչ լինի ասացեալ,[9] բայց ի նմանէ իբրու յանյաղթ պատճառ[10] գոլով ամենայնի, եւ ի մարմին,[11] վն զի առանց

---

[1] V աւմաւգնիոս:

[2] V ստրատիոս եւ տրոփպեոք եւ կաթարսիոս:

[3] V քերթողն ասէ:

[4] V եւ է պատճառ:

[5] V յերգսն:

[6] V Նո—նի:

[7] V աստղավար:

[8] V դարձուցանէ ի լոյս՝ յոյժ փոյթ նոցունց արարեալ:

[9] V այլ կամի ոչ այլ ինչ ասել:

[10] V . . . պատճառէ զգոլն ամենայնի:

[11] V եւ զի առանց խափանման . . . :

խափման. ընդ ամենայն [թ]աւի անցանէ։ եւ պէ-պրումէն[1] վասն զի ըստ ամենայնի աւարտեալ է եւ զամենայն աւարտէ եւ ոչ ինչ է յէակացս անաւարտ. Իւ մասն լինի ասացեալ, զի մաս-նաւորէ զամենայն. եւ Նէմէս։ որ է[2] բաշխումն, զի իւրաքանչիւրում էակաց[3] բաշխեալ լինի, եւ տրաստիա.[4] լինի ասացեալ, վասն զի անճո-ղոպրելի ըստ բնութե. պատճէ։[5]

Բարիոք եւ երիս[6] մասունքն իմարմենին[7] եւ տոր. եւ պքտիոնն ի նա լինին հայեցեալ. քան երիս[8] մասունքն. ըստ երից ամանակաց բաժանեալ լինին.[9] եւ թելքն տոր. պքտիոն. նին. գործեալն նշանակէ։ եւ որ դեռ մնեալն լինի, զներկայս, եւ որ տակաւին յեղակատն[10] է, զապառնին։ եւ ի մասանցն տոր.[11] աւդոսն. ցան-ցեալն նշանակէ. քանզի անփոփոխելի է որ ինչ եղեւն. իսկ կլաւթաւ. ներկայս է. որպէս տա-րածեալ թելն քերեալ լինի եւ ոլորկեալ[12] այլ. զաքեսիս։ թէ որպէս հասանելի. ելանել յան-

---

[1] V եւ յետոյ, վասն զի զամենայն աւարտէ։
[2] V չունի «Նեմէս, որ է» բառերը։
[3] V վասն զի յիւրաքանչիւրումն յէակացս . . ։
[4] Վեննա օրինակը՝ «Ատրիպատր։»,.
[5] V պատճառ է։
[6] V երեք։
[7] V իմարմնէին ի նա լինին հայեցեալ. [illegible] չունի «տոր եւ պքտիոնն» բառերը։
[8] V քանզի երեք։
[9] V թելքն որ գործեալ եւ պարապեալ՝ զանցեալն նշանակէ, եւ որ դեռ մնեալ . . . ։
[10] V յաղէկատն։
[11] V եւ ի մասանց այտի է ինչ որ եղեւն, եւ է որ լինի, որպէս տարածեալն թելն . . . ([illegible] V չունի չոր բառեր, չոր օր. կլաթաւ են։)
[12] V ըղորկեալ. իսկ որ հանդերձեալ է լինել, թէ որպէս է հասանել, դժուարին է գիտել. ([illegible] չոր դարձեր։)

նման նիւթոյն դժուարին է գտնել. եւ[1] այսորիկ ամենայն ոչ այլ ինչ են[2] բայց յայս՝ որպէս եւ նահատակն պլատոն ասէ: Իսկ արդ մեծ, որպէս նախնի[3] է բան, սկիզբն[4] եւ վախճան. եւ մեջ.[5] զէակացս ամենիցուն ունելով ուղիղս ճանապարհ կատարէ գնացեալ ըստ բնութե հետեւելով տեսակաց. Սակս իրաւանցն պակասելոյ՝ յայս աւրինէն եւ պատուհասիչ գոլով,[6] որոյ[7] եւ հանդերձեալն է բարեբաստ լինել եւ երանի վաղվաղակի ի սկզբանէ կցորդեալ լինի:

## Յիշատակարան*

Գրեցաւ իմաստացոյց. բանքս առաջնոց գտաւղոց բնութեան իրաց որ ըստ գովլի եւ պարսաւի: ի: ո: հ: բ. Թուաբերութես մերային ազանց (= 1223 Յ. Ք.) ի վանքս խորանաշատ կոչեցեալ. ի նահանգիս աղուանից. ընդ հովանեաւ մաւրս լուսոյ մեծածնին ձեռամբ ստեփանոս աղթամարեցւոյ. կրթեալ առ վանական վարդապետիս. Արդ աղաչեմ եւ այլ եւս:

[1] V չունի:

[2] V ոչ ումեք է գիտելի, բայց միայն Աստուծոյ, որպէս նահատակն . . . :

[3] V նախնեաց:

[4] V սկիզբն է եւ . . . :

[5] V ունելով զամենայն էակս, ըստ ուղիղ ճանապարհի կատարէ զգնացս նոցա՝ բնութեան հետեւեցուցանելով տեսակաց:

[6] V յԱստուծոյ պատուհասին:

[7] V նոյնպէս եւ որ հանդերձեալն է բարեբաստիկ լինել, եւ երանելի՝ ի նմանէ ընդունի զշնորհս:

* "Յիշատակարան" բառը մենք աւելցուցած ենք:

# ՑՈՒՑԱԿ ՀԱՏՈՒԱԾՈՑ

§ 1. Գործքիս նպատակն, եւ կարեւորութիւնն անխառն հայերէն բնագիր մ'ունենալու ի գործածութիւն:

§ 2. Պայմանք՝ որոցմէ կախուած է համեմատութեան մ'արժէքը:

§ 3. Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց հայ Թարգմանութեան հնութեան ժամանակն եւ ճոխութիւնը:

§ 4. Այս ճառերուն կից մեկնութեանց նկատմամբ ենթադրութիւններ:

§§ 5. 6. Ոմանց նոյնութիւնը կը ցուցնէ որ ճառերն եւ մեկնութիւնք ի միասին թարգմանուած են:

§ 7. Թարգմանութեանց ժամանակին նկատմամբ ներքին ապացոյց:

§ 8. Հայ ձեռագրաց մէջ գտնուած վերնագրութեանց ապացոյցը:

§ 9. Դաւթի Անյաղթի տրուած թարգմանութեանց եւ մեկնութեանց ցանկը:

§ 10. Հին հայ հեղինակաց՝ Ստեփաննոսի Սիւնեցւոյ եւ Գրիգորի Մագիստրոսի վկայութիւնը:

§ 11. Ո՞վ էր Դաւիթ Անյաղթ : Վալենթին Ռոզէի կարծիքը:

§ 12. Հին հայերէն "Չափաց գրոց" վկայութիւնը:

§ 13. Առեղծուած է Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց վրայ եղած մեկնութեանց հեղինակը: Զատոնք Դաւթի Անյաղթի պէտք չէ ընծայել: Այս մեկնութեանց նկարագիրը:

§§ 14., 15., 16. Մեկնութեանցս նկատմամբ հաւանականութիւնք:

§§ 17., 18. Մեկնութիւնքս որ կից են թարգմանութեան՝ մինչեւ Ե դար կը հասնին հնութեամբ:

§ 19. Թէրեւս հնագոյն հայկական թարգմանչաց ոչ-քրիստոնեայ դպրոցի մը գործքն են:

§ 20. Համառօտ կրկնութիւն ցուցմանց: Խնամութիւն “Յաղագս Մեկնութեան„ գրոց հին հայերէն բնագրին՝ Բոյեթիուսի գործածածին հետ:

§ 21. Հին հայերէն թարգմանութեանց հաւատարմութեան վրայ:

§ 22. Ստորոգութեանց եւ Յաղագս Մեկնութեան գրոց հայերէն թարգմանութեան բնագիրը. ա) Վենետիկ տպագրուած բնագրին եւ անոր ձեռագիր աղբերքն:

§ 23. բ) Ձեռագիր Աղբերքն: Փարիզի ձեռագիրք:

§ 24. Երուսաղէմայ ձեռագիրք:

§ 25. Փաւիայի Համալսարանի Մատենադարանին Տիկինեան (Ticinus) ձեռագիրը:

§ 26. Այս ձեռագրին բովանդակած նիւթերն եւ իւր առանձնայատկութիւնք:

§ 27. Ձեռագրին պատմութիւնը: Թէսէոս Ամբրոգիոս:

§ 28. Թարգմանութիւն “Յաղագս Աշխարհի„ եւ “Յաղագս Առաքինութեանց„ ճառերու: Հայերէն բնագրին թերութիւնք, եւ անոր ձեռագիր աղբերք:

§ 29. “Յաղագս Առաքինութեանց„ ճառին թարգմանութիւնը:

§ 30. Թարգմանութիւն Ներածութեան Պորփիւրի: Անոր Վենետկեան եւ այլ բնագիրք, եւ անոր հնութիւնը:

§ 31. Ներածութեան վրայ Դաւթի Մեկնութեան թարգմանութիւնը:

§ 32. Այս համեմատութիւնքս ընելու ատեն դիտուած նպատակը:

§ 33. Շնորհակալութիւն գործքիս պատրաստութեան համար եղած օգնութեանց:

